


ՍԱՐՄԵՆ

Նկ. Ռ. ՆԱՆՈՒՇՅԱՆԻ

Մեր բազմահարկ տան բակում,
Բարդիների շվաքում,
Կա զովաշունչ ավազան,
Մեջը՝ զողտրիկ մի արձան:
Ջուր է ցայտում արձանից
Ու ցած թափվում ցնծալից...
Կանաչազարդ ծառուղում
Երեխաներ են խաղում:

Բարդիների տակ նստած,
Ծաղկանց բույրով արբեցած,
Նայում եմ այն աղավնուն,
Որ երկնքում սավառնում,
Փողփողում է, ինչպես թանկ
Խաղաղության դրոշակ:
Ծփում է ծովը կանաչ,
Առուն երգում է կամաց,
Չորս կողմ ժպիտ, խնդություն,
Ես լրագիր եմ թերթում,
Դիտում, դիտում եմ երկար
Սրտաճմլիկ մի նկար:



Մի խումբ յանկի մանուկներ
Շարքով եկել են կանգնել.
Գլխներին սաղավարտ,
Բոլորը կուշտ ու պարարտ,
Պարզած զենքերը փայտե՝
Կրակում են իբրև թե:
«Մահապատիժ» են խաղում
Մանուկները այն հողում.
Նեգրին դրել են թիրախ
Ու կրակում են ուրախ...
Նայի՛ր, ինչպե՞ս սառնարյուն
Սպանել են սովորում:

Ու ցասումով վեր կացա,
Շատրվանին մոտեցա.
Տեսա սևուկ Սամվելիս,
Ջրերի հետ կռվելիս.
Ավազանի մեջ ընկած,
Անզոր թևերը պարզած,
Տերևների տակ մտել՝
Լուռ խեղդվում էր մի թիթեռ:

Բայց աչքերով հուրհրան
Չորս տարեկան իմ տղան
Փայտե բահիկը ձեռին՝
Փրկում էր խեղճ թիթեռին:
Հանեց մանկիկս զվարթ՝
Թիթեռնիկին ուժահատ,
Արևի տակ տաքացրեց,
Օդում ազատ թռցրեց:

Համբուրեցի իմ որդու
Թաթիկները կենսատու,
Քնքուշ, քնքուշ շոյեցի
Գանգուրները գեղեցիկ.
Իսկ նա պոկվեց ինձանից
Եվ ժպիտովն իր անբիծ
Վազեց, խառնվեց խաղացող
Մանուկներին լուսաշող:




*Լենինի–Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 6

ՀՈՒՆԻՍ

1952 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 24-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

**Մոսկվա. 1952 թ. մայիսի 1: 612-րդ դպրոցի առաջին դասարանի աշակերտուհի Վերա Կոնդակովան ջերմորեն ողջունում է Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինին:**

# ՀԱՆՈՒՆ ԵՐՋԱՆԻԿ ԱՊԱԳԱՅԻ

*Յոտո Վ. ՍԵՎՈՅԱՆԻ*

Ամեն տարի հունիսի 1-ին աշխարհի բոլոր ազնիվ մարդիկ նշում են երեխաների պաշտպանության միջազգային օրը։

Աշխարհի ժողովուրդները պայքարի են ելել իրենց երջանիկ կյանքի, իրենց երեխաների լավագույն ապագայի համար։ Շատ երկրներում ստեղծված են երեխաների պաշտպանության ազգային կոմիտեներ։

Կանանց միջազգային դեմոկրատական ֆեդերացիայի կոչով Ավստրիայի մայրաքաղաքում՝ Վիեննայում այս տարվա ապրիլին տեղի ունեցավ երեխաների պաշտպանության միջազգային կոնֆերանս։ Այդ կոնֆերանսին մասնակցում էին 64 երկրի 540 դելեգատ. նրանց մեջ կային մանկավարժներ, բժիշկներ, գիտնականներ, գրողներ, արտիստներ։



Երևանի Կիրովի անվան մանկական զբոսայգում։

Կոնֆերանսում նրանք քննարկեցին, թե ինչ կարելի է անել երեխաների համար՝ խաղաղության պայմաններում։ Քննարկեցին երեխաների առողջության, դաստիարակության, բարոյական և կուլտուրական զարգացման հարցերը։ Կոնֆերանսի դելեգատները իրենց ելույթներում ցույց տվին, որ կապիտալիստական երկրներում և նրանց գաղութներում երեխաները չունեն մանկություն։ Սպառազինության քաղաքականությունը կործանարար ներգործություն է ունենում երեխաների վիճակի վրա։ Ամերիկայի Միացյալ Նահանգներում երեխաների շահագործումը հասել է չտեսնված չափերի։ Ամեն տարի Միացյալ Նահանգներում մեռնում են տասնյակ հազարավոր երեխաներ, որովհետև ուժից վեր աշխատանք են կատարում։

Ամերիկյան իմպերիալիստները դաժանորեն հետապնդում են նեգր բնակչությանը, նեգր երեխաներին։ Կեղծ մեղադրանքի հիման վրա ամերիկյան դահիճները էլեկտրական աթոռի վրա մահապատժի ենթարկեցին յոթ պատանի նեգրի։ Եվ դա միայն այն բանի համար, որ նրանք նեգր են։ Նրանք մահապատժի ենթարկեցին նաև չորս երեխայի հայր, միանգամայն անմեղ նեգր Վիլի Մակգիին։ Նրա աղջիկը, տասնմեկ տարեկան Գրիսիլին հոր սպանությունից առաջ պրեզիդենտ Տրումենին մանկական աղերսանքի այսպիսի տողեր գրեց.

«Զորս նեգր երեխաներիս սովորեցրել են, որ Ամերիկայի Միացյալ Նահանգները ազատ երկիր է։ Պարոն Տրումե՛ն, խնդրում ենք, թույլ մի՛ տվեք, որ մեր հորը սպանեն։ Մենք սիրում ենք նրան և նա մեզ պետք է։ Թույլ մի՛ տվեք մեր հայրիկին սպանեն»։

Նեգր երեխայի աղերսանքին ուշադրություն չդարձրեց պարոն Տրումենը։ Դահիճները կատարեցին իրենց գործը։

Տխուր ու դառն է Անգլիայի երեխաների կյանքը։ Կարիքը, քաղցը անգլիական երեխաներին ստիպում են ամեն տեսակ աշխատանք կատարել։ Անգլիայում 14—18 տարեկան տասը տղաներից ու աղջիկներից ութը ստիպված են թողնել դպրոցը և աշխատանք որոնել։

Ավելի վատ է Իտալիայի երեխաների դրությունը։ Աշխատավորների դպրոցական տարիք ունեցող երեխաների կեսից ավելին անցյալ տարի դպրոց չեն հաճախել։ Նրանք կոշիկ չունեն, հագուստ չունեն։ Իտալական կառավարողները դպրոցական շենքերը տրամադրել են ամերիկացիներին, որոնք Իտալիայում ստեղծում են ռազմական բազաներ։

Սարասփելի պայմաններում է ապրում Մերձավոր և Միջին Արևելքի երկրների մատաղ սերունդը: Իրանում հարյուր երեխայից ութսունհինգը մեռնում են 15 տարեկան չդարձած: Թյուրքիայի միայն Ստամբուլ քաղաքում կա ավելի քան 35.000 անապաստան երեխա: Երեք և կես միլիոն երեխաներից երկու միլիոնը չեն սովորում: Վերջերս թյուրքական «Հյուրրիետ» թերթում տպագրվեց ծնողներից մեկի նամակը, որտեղ նա ասում է. «Երբ ես գնացի երեխաներիս համար դասագրքեր գնելու, բոլորովին ինձ կորցրի, երբ իմացա, թե որքա՜ն թանկ են դրանք: Միայն դասագրքերի համար, չհաշված տետրերը, մատիտները և այլն, ես պետք է վճարեի 100 լիրա: Երբ ես վերադարձա տուն, կնոջս հետ միասին երկար մտածեցինք և որոշեցինք, որ մեր ավագ տղան պետք է թողնի դպրոցը, որովհետև մենք ի վիճակի չենք նրան ապահովել դասագրքերով»:

Այլ է երեխաների վիճակը Սովետական Միությունում և նոր դեմոկրատիայի երկրներում: Սովետական երկրում կառավարությունը, բոլշևիկների պարտիան և Մեծ Ստալինը մշտապես հոգ են տանում երեխաների դաստիարակության ու կրթության համար:

Սովետական Միությունում սովորողների թիվն անցյալ տարի հասնում էր 57 միլիոն մարդու: 1951 թվականի ընթացքում համարյա հինգ հազարով ավելացավ յոթնամյա և միջնակարգ դպրոցների թիվը: Միայն մեր ռեսպուբլիկայի դպրոցներում սովորում է ավելի քան 300 հազար աշակերտ: Վերջին մի քանի տարվա ընթացքում Սովետական



Շահումյանի անվան դպրոցի գերազանցիկ աշակերտուհի Ելյա Ալոյանը:

Հայաստանում կառուցվել է դպրոցական 100 նոր շենք:

Ստեղծված են բոլոր պայմանները Սովետական երեխաների հանգստի և ուրախ ժամանցի համար: Ավելի քան հինգ միլիոն երեխա անցյալ տարի, ամառը, հանգստացան պիոներական ճամբարներում, մանկական սանատորիաներում և ամառանոցային վայրերում:

Պայծառ է մեր երկրի երեխաների ներկան և ավելի պայծառ է նրանց ապագան:

Մեր երկրի օրինակը, երեխաների լավագույն բարեկամ ընկեր Ստալինի անունը, աշխարհի ժողովուրդներին պայքարի է հանել հանուն խաղաղության, հանուն աճող սերնդի երջանիկ ապագայի:

## ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅԱՆ ԴԱՍ

*ԱՆ. ՇԻՐՈՅԱՆ*

*Ալիկն ուսումը սիրում*
*Եվ շատ լավ է սովորում*
*Ու ամեն օր տուն գալիս*
*Քույրիկին դաս է տալիս.*
*«Հասմի՛կ, Հասմի՛կ, ահա, տե՛ս.*
*Սրան ասում են քարտեզ:*
*Տե՛ս, սա ծով է կապուտակ,*
*Սա էլ գետ է, սա վտակ.*
*Սա կղզի է, սա ճահիճ.*
*Իսկ այս էլ, տես՛, մի մեծ լիճ.*
*Սա ցամաք է, ահա, տես.*
*Ցամաքը հող է, գիտե՞ս.*
*Տես այս փոքրիկ օղակը,*
*Սա էլ արդեն քաղաք է.*
*Սա էլ լեռ է, սա էլ՝ սար,*
*Բա՜րձր... ամպին հավասար...»:*
*Հայրն ու մայրը լսում են*
*Ու ժպտալով ասում են.*
*— Ուսուցիչ է Ալիկը,*
*Ապրի մեր լավ բալիկը:*



Բ. ՍԵՅՐԱՆՅԱՆ

Նկ. Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

*Մայրաքաղաքի դպրոցներից մեկի վերջին դասարանի ավարտական երեկոն էր՝ հրաժեշտի երեկոն, որ ամեն տարի, միշտ նույն օրը, կազմակերպվում է հերթական շրջանավարտների համար։*

*Դպրոցի դահլիճը ծայրեծայր լի էր աշակերտուհիներով, դասատուներով, հյուրերով։ Մուտքի մոտ կանգնած երկու աղջիկ ներս մտնողների կրծքին ամրացնում էին ընտիր կավճապատ թղթից կտրված սպիտակ աղավնիներ, որոնց կտցի ոլորուն ժապավենի վրա խնամքով գրված էր «Խաղաղություն»։ Ամբողջ դահլիճը՝ մեծ թե փոքր, կրում էր այդ յուրօրինակ կրծքանշանը։*

*Երբ բեմը բացվեց, գորգերով ու ծաղիկներով զարդարված պատի ճակատից մեզ ժպտաց հարազատ Ստալինի նկարը, որի տակ՝ կարմիր ժապավենի վրա գրված էր՝ «Խաղաղություն՝ աշխարհին»։*

*Այժմ արդեն դժվար չէր գուշակել, որ շրջանավարտներն իրենց հրաժեշտի երեկոն նվիրել են խաղաղության թեմային։*

*Բեմի վրա սեղմ շարքերով կանգնած էին քսաներկու գեղեցիկ աղջիկներ՝ մի տեղ հավաքված քսաներկու դարունների պես։ Նրանք հագել էին դպրոցական համազգեստ, կրծքներին ամրացրել «աղավնիներ», իսկ ճաշակով սանրված մազերի մեջ՝ թարմ վարդեր։*

*Նկատելի հուզմունքից բոլորն էլ թեթևակի շառագունել էին։ Թերևս դա վերջին երեկոն էր հարազատ դպրոցի պատերի ներսում, ուր տարիներ շարունակ սովորել էին նրանք, ընկերություն արել, ուրախացել ու տխրել։ Այստեղ ամեն ինչ, ամե՜ն ինչ նվիրական էր դարձել նրանց համար. ուսուցիչներից ամեն մեկը, նույնիսկ պառավ հավաքարարուհին, որ երբեմն դժգոհել էր նրանց անվերջ չարաճճիություններից, այժմ այնպես քաղցր ու անփոխարինելի էին դարձել, որ հավիտյան պիտի մնային նրանց հիշողության մեջ։*

*«Մնաս բարով, հարազատ դպրոց, շնորհակալություն, սիրելի ուսուցիչներ». այս գորովալից խոսքերն էին դրոշմված շրջանավարտներից ամեն մեկի դեմքին, նրանց մտախոհ աչքերի մեջ։*

*Արտասանեին նրանք, թե երգեին, հրաժեշտի խոսք ասեին, թե շնորհակալություն՝ միայն խաղաղությունն էր աղբյուրի պես հորդում նրանց մաքուր սրտից, խաղաղությունն էր թևածում դահլիճի կամարների տակ։*

*Շրջանավարտներին ողջույնի խոսք ասացին նրանց կրտսեր ընկերները՝ մյուս դասարանների աշակերտները, դպրոցական կազմակերպությունները։ Համարյա ամեն դասարան մի նվեր էր ուղարկել նրանց՝ մեծ մասամբ ծաղկեպսակներ, գեղարվեստական գրքեր, նկարների ալբոմներ. մոտենալով ամբիոնին, ողջունողները, անկեղծ հուզմունքի խոսքերից հետո, այդ նվերները հանձնում էին շրջանավարտներին ու ներկաների ջերմ ծափահարությունների տակ վերադառնում տեղերը։*

*Երկրորդ, թե՞ երրորդ դասարանի մի փոքրիկ աղջիկ, որ գրկած բեմ տարավ քսաներկու ալ-կարմիր վարդերից կազմված մի գեղեցիկ ծաղկեփունջ, ձեռքի մեջ սեղմած աշակերտական տետրի թերթիկը բացելով, ուզեց կարդալ ողջույնի խոսքը. բայց երբ նա շրջվեց դեպի դահլիճը, իր կողմն ուղղված բազմաթիվ հայացքներից շփոթված կանգ առավ։ Նայեց ձեռքի թղթին ու լուռ մնաց. աչքե՞րը շաղվեցին, թե՞ ձեռագիրն օտար թվաց, դժվար է ասել։ Սակայն մեկ էլ նա հանկարծ թուղթն արագ ծալեց, թեքվեց դեպի շրջանավարտներն ու շուտասելուկի պես հուզված թոթովեց.*

— Չմոռանաք մեր դպրոցը, մեր դպրոցի զանգի ձայնը... մեր զանգի անո՜ւշ ձայնը...

Հետո նա ձեռքի ծաղկեփունջը համարյա նետեց ամենից մոտ կանգնած աղջկա գիրկը և արագությամբ փախավ: Հանդիսատեսները խնդագին բացագանչություններով արձագանքեցին այս անկեղծ թոթովանքին: Երբ դահլիճը նորից խաղաղվեց, գրքերի երկու խոշոր կապոց ձեռքին բեմ բարձրացավ շիկահեր մի աղջիկ՝ դպրոցի կոմերիտական կազմակերպության ներկայացուցիչը: Նա կապոցները դրեց ամբիոնին, թեքվեց դեպի շրջանավարտները, երկար ու խոր հայացքով նայեց նրանց... Ամբողջ դահլիճը շունչը պահած սպասում էր նրա խոսքին: Սակայն աղջիկը դեռ հապաղում էր: Նա հուզված էր: Մի՞թե մոռացավ ասելիքը: Գուցե ավելի հարմար խոսք էր փնտրում, ավելի ջերմ ու սրտաբուխ, քան ասել էին նախորդները, հենց թեկուզ՝ այն փոքրիկ աղջիկը, որի անկեղծ թոթովանքը դեռ թարմ էր բոլորի հիշողության մեջ: Բայց ահա նա շրջվեց դեպի ամբիոնը, հանգիստ արձակեց կապոցները, դուրս հանեց գրքերից մեկը և հուզված ձայնով դիմեց շրջանավարտներին:

— Սիրելի ընկերնե՛ր, երեկ դուք փակեցիք ձեր դպրոցական դասագրքերը: Նրանք մտերիմ բարեկամների նման ուղեկցեցին ձեզ մինչև այս հանդիսավոր երեկոն: Բայց այս դասագիրքը...

Եվ նա գլխից վեր բռնած, ցույց տվեց մեր պարտիայի պատմության «Համառոտ դասընթացը»:

— Այս դասագիրքը ուղեցույց աստղի նման ձեզ կառաջնորդի ձեր ամբողջ կյանքում...

Դահլիճում մի անզուսպ ծափահարություն փոթորկվեց: Աղջիկը բոլոր շրջանավարտներին բաժանեց «Համառոտ դասընթացի» օրինակները և բեմից իջավ: Շրջանավարտներն իրենց ստացած անգնահատելի նվերները սեղմեցին կրծքներին, ինչպես սովորաբար բռնում են դասագիրքը՝ դպրոց գնալիս:



Ես նայում էի նրանց ու թվում էր՝ նրանք ոչ թե հրաժեշտ են տալիս դպրոցին, այլ հենց այդ երեկոյից մտնում են մի նոր դպրոց՝ խաղաղ ու ստեղծարար կյանքի դպրոցը, որի խորհրդանիշը սպիտակ աղավնու կերպարանքով թառել է նրանց կրծքին, որի դասագիրքն արդեն ստացան և որի ճանապարհն է ցույց տալիս բեմի ճակատից ժպտացող հարազատ Ստալինի ջերմ ու սիրագորով հայացքը:

ԿՈՒԴՐԱՏ ՀԻՔՄԱՏ
(Ուզբեկ գրող)

# ՆՈՐ ԳԻՐՔԸ

Քեռի Մուրադը Հաքիմի համար
Մի գեղեցիկ գիրք վերջերս գնեց,
Ուրախությունից տղան խանդավառ
Երեք օր գիրքը բռի տակ պահեց:
Ու տղան պառկած թփերի գրկում
Թերթում էր գրքի էջերն անհամբեր,
Անգիր սովորեց ինչ որ կար գրքում,
Արտանկարեց սիրուն պատկերներ:
Բակի տղաներն այդ գիրքը տեսան,
Նրանց դուր եկավ նվերը գողտրիկ,
Գիրքն էլ ունեցավ ընկերներ այնքան,
Որքան Հաքիմը՝ մեր տղան փոքրիկ:

Թարգմ. Հ. ՍԵՎԱՆ




ՍՏ. ԿՈՒՐՏԻԿՅԱՆ

(Շարունակություն[1])

Նկ. Պ. ՄԱԼԱՅԱՆԻ

Գյուղը հետզհետե թաղվեց խավարում։ Մութ նկուղում, հողե հատակին նստած, խոշտանգված պատանին մռայլ մտքերի մեջ էր։ Նրա հայացքի առաջ միշտ միևնույն պատկերն էր՝ գյուղի հրապարակում, դարավոր կաղնու ճյուղից կախված հայրը, նրա ոտքերի տակ լճացած արյան մեջ անկենդան ընկած իր հավատարիմ ընկերը՝ Տիգրիսը, իսկ տանը՝ հիվանդ մայրն ու տատիկը, որ ահա այժմ անքուն նստած, աղի արցունք էին թափում իր և հոր համար... և Տիգրիսի համար...

Ծանր վիշտը համակել էր Նիքոյին։ Ուժ գործադրելով նա զսպում էր փղձկոցը։ Թող ֆաշիստ պահակը չիմանա, որ ինքը վշտից թուլացել է...

Կախաղանից փրկվելու համար պատանուն մնում էր միայն մի ելք՝ փախչել նկուղից և գնալ լեռները՝ պարտիզանների մոտ։ Բայց ինչպես փախչել, երբ երկաթե հաստ ձողերով պատած էր նկուղի միակ լուսամուտը, իսկ դրսից ամուր փակված դռան առաջ միշտ ժամապահն էր շրջում։ Դռան մոտից լսվեց անընդհատ շրջելուց հոգնած հաստակավոր ժամապահի երկար հորանջը։

Երկաթե ձողերի արանքով լուսնի շերտավոր լույսն ընկել էր նկուղի հատակին։

Այդ միջոցին դրսից թեթև շշուկ լսելով, Նիքոն բարձրացրեց աչքերը և թույլ լուսավորված լուսամուտի քառակուսու մեջ տեսավ ձողերի արանքից երկարած մի փոքրիկ ձեռք։ Ինչ-որ մի բան ընկավ նկուղի հատակին և ձեռքն արագ անհայտացավ։

Մի պահ սպասելուց հետո Նիքոն զգույշ մոտեցավ և շոշափեց կապոցը։ Նրա մեջ կար հաց, մի քիչ ձիթապտուղ և... և մի փոքրիկ ատրճանակ։ Նիքոն իսկույն հափշտակեց ատրճանակը, ուշադիր զննեց, գուրգուրանքով շոյեց սառը երկաթը։

Նա հուզված էր։ Ուրեմն իրեն չէին մոռացել ընկերները, համագյուղացիները և ֆաշիստներից թաքցրած ամենաթանկագին բանը՝ ատրճանակը ծանր վայրկյանին հասցրել էին իրեն... Բայց ո՞վ էր նա, որ վտանգելով կյանքը, այս կես գիշերին հետապնդել էր ժամապահին և հարմար վայրկյանին մոտեցել ու լուսամուտից ներս էր գցել ատրճանակը։ Ու Նիքոն զգաց, որ ամբողջ ժողովուրդն է կանգնած իր թիկունքին՝ իրեն պաշտպան է։ Եվ նա նոր ուժ ստացավ։ Այժմ սկսեց մտածել, թե ինչպես օգտագործել ատրճանակը, կախաղանից փրկել կյանքն ու վրեժ լուծել ֆաշիստներից...

Քիչ հետո Նիքոն խաղաղվեց, ախորժակով կերավ հացն ու ձիթապտուղը և մեղմ, հազիվ լսելի ձայնով սկսեց երգել.

«Մենք ազատ Հունաստանի զորքն ենք,
Մեզ հետ է ամբողջ ժողովուրդը...»

Կես գիշերին ժամապահը լսեց, որ համառ կերպով խփում են նկուղի դռանը։ Նա հորանջելով մոտեցավ և անհանգստանալուց զայրացած կիսաբաց արեց դուռը։

— Մեռնո՜ւմ եմ,— գալարվելով ասաց Նիքոն,— լսի՛ր, քեզ բան ունեմ հայտնելու...

Եվ սուր ցավից խոսքը կիսատ թողնելով՝ տնքաց։

Տեսնելով, որ ժամապահը ուզում է դուռը նորից փակել, Նիքոն գրպանից հանեց հոր նվիրած ժամացույցը և մեկնելով պահակին՝ շշնջաց.

— Վերցրո՛ւ, միայն խնդրում եմ մորս հայտնիր, որ ոսկին թաղել եմ աջ անկյունում,— նա կհասկանա...

[1] Սկիզբը՝ «Պիոներ» № 5-ում։

Կաշառքով և ոսկի գտնելու հեռանկարներով հրապուրված ժամապահը նկուղի դռնից ներս մտավ, հրացանը իջեցրեց, փողը պահեց թևի տակ և ձեռքը երկարեց՝ ժամացույցը վերցնելու ու թաղած ոսկու ճիշտ տեղն իմանալու համար։

Հենց այդ վայրկյանին Նիքոն մի քայլ ետ գնաց և ձեռքին փայլող ատրճանակի փողն ուղղելով ժամապահին՝ սպառնաց.

— Թող զենքդ և գնա անկյուն, թե չէ՝ կկրակեմ...

Մի ակնթարթ տեսնելով իր դեմ ուղղված ատրճանակի փողը, անակնկալի եկած ժամապահը կատարեց Նիքոյի պահանջը և ետ-ետ գնաց նկուղի անկյունը։ Նիքոն վերցրեց ժամապահի հրացանը, փակեց երկաթապատ դուռը, շտապ անցավ գետի մյուս ափը և անհայտացավ ծանոթ անտառում։

Հաջորդ օրը հրաշքով կատարված փրկության լուրը տարածվեց ամբողջ գյուղում։ Մեծից մինչև փոքրը ցնծության մեջ էին։ Բայց ինչպե՞ս էր Նիքոյին հաջողվել փախչել նկուղից։ Այդ ոչ ոք չիմացավ, բացի պատանի հովիվ Կոստայից ու նրա ալեհեր պապից՝ Արվանիթաքիից...

Փախած «խռովարարի» փոխարեն ֆաշիստները գնդակահարեցին զենքը երեխային հանձնած ու նրան անձնատուր եղած ժամապահին։

Մի շաբաթ լեռներում ու անտառներում թափառելուց հետո՝ Նիքոն վերջապես գտավ իր հոր պարտիզանական ջոկատը և հրամանատարին պատմեց ամեն ինչ, որ պատահել էր իր հոր և իր հետ։

Մակեդոնական պարտիզանների հրամանատարը՝ բարձրահասակ, տակավին երիտասարդ, խստադեմ մի մարդ, որ արդեն տեղյակ էր իր հետախույզի կախաղան բարձրացնելուն և նրա որդու բանտից փախչելուն, անխոս լսեց իր առաջ ձիգ կանգնած պատանուն, գորգուրալի ու թախծոտ հայացքով դիտեց նրա դժգույն դեմքը, հաստ ու խիվ հոնքերը, որոնք այնքա՜ն հիշեցնում էին հորը։

Երբ Նիքոն վերջացրեց իր պատմությունը, հրամանատարը ձեռքը դրեց նրա ուսին և մեղմ ասաց.

— Դու կմնաս մեզ մոտ, Նիքո՛... Կմնաս մեր՝ Ստալինի անվան պարտիզանական ջոկատում, կսովորես հրացանից, գնդացրից կրակել, նռնակ նետել, հետախուզել թշնամուն, խաբել նրան... Դու կփոխարինես հորդ, մենք միասին մինչև վերջ կկռվենք ազատ Հունաստանի համար...

Նիքոյի աչքերին ուրախության արցունքներ երևացին։ Նա հպարտ և ուժեղ զգաց իրեն ու շնորհակալության խորը զգացումով նայեց իր հոր հրամանատարի խանդաղատանքով լի աչքերին։ Նա՝ Զախարիադիսն այժմ իր հրամանատարն էր... Նրա հետ Նիքոն զենքը ձեռքին պիտի մասնակցեր մակեդոնական լեռներում ծվարած իր հայրենի գյուղի և ամբողջ Հունաստանի ազատագրման պայքարին։

*
* *

Երբ աշնան անլուսին գիշերին Նիքոն զգույշ մտավ հայրական տունը, անակնկալի եկած տատը փաթաթվեց նրան և ուրախությունից, թե վշտից փղձկաց։

Վեց ամսվա բացակայությունից հետո տատն ու թոռը նորից հանդիպում էին իրար։ Բայց այս վեց ամսվա ընթացքում ինչքա՜ն



էր փոխվել Նիքոն։ Աճել էր հասակով, պարթևացել՝ ինչպես հանգուցյալ հայրը։ Ընչացքի սպիտակ, բարակ, հազիվ նկատելի աղվամազերը հաստացել ու սևացել էին. թարմ

*դեմքին առնականության առաջին գծերն էին դրոշմվել…*

*— Իսկ որտե՞ղ է մայրս, տատի՛,— հարազատ խրճիթում հայացքը պտտեցնելով անհամբեր հարցրեց Նիքոն։*

*Բայց տատն անմիջապես չպատասխանեց, ասես չլսեց թոռան հարցը. լուռ մնաց, երկար նայեց Նիքոյին ու հանկարծ սիրտը պոռթկաց։ Արցունքի խոշոր կաթիլները գլորվում էին նրա թոշնած, ծալ-ծալ այտերի վրայից։*

*Նիքոն դժգունել, քարացել էր՝ հայացքը հառած վշտահար տատիկին։ Բայց ինչո՞ւ էր տատիկը շարունակում լռել։ Ինչ-որ սարսափելի բան էր գուշակում Նիքոյի սիրտը և կծկվում։*

*Սենյակի ճնշող լռության մեջ լսվում էր միայն պատի ժամացույցի համաչափ թիկթակը։ Պառավն ամեն օր առավոտյան ու երեկոյան լարում էր և ուշադիր հետևում, որ որդու գնած ժամացույցը միշտ աշխատի, միշտ սենյակից անպակաս լինի նրա ծանոթ, հարազատ ձայնը…*

*Գյուղամիջից անժամանակ կանչեց մի աքաղաղ և նորից լռություն տիրեց։*

*Նիքոն վախենում, սարսափում էր կրկնել իր հարցը։*

*— Մարիաս չկա, զավա՛կս, մայրդ չկա…,— վերջապես դողդողաց պառավի վշտահար ձայնը,— գազանները նրան էլ սպանեցին՝ քո տեղը չասելու համար… Սպանեցին իմ Մարիային… Գերեզմանն էլ անհայտ է՝ ինչպես Թասոյինը… Անգերեզման կորան ձագուկնե՛րս…*

*Ու արցունքները նորից գլորվեցին նրա մշուշոտ աչքերից։*

*Նիքոյին թվաց, որ դաշունահարեցին իր սիրտը. նա աշխատեց կուլ տալ պոռթկացող վիշտը, բայց չկարողացավ զսպել կրծքից բարձրացող անդիմադրելի հեկեկոցը…*

*Ինչպե՞ս մինչև այժմ չէր իմացել մոր սպանությունը, ինչպե՞ս պարտիզաններն այդ թաքցրել էին իրենից, իսկ հրամանատարն էլ իհարկե, դիտմամբ ամեն տեղ ուղարկել էր իրեն հետախուզության, բացի իր հայրենի գյուղից։*

*Լուսաքողարկված սենյակի աղոտ լույսի տակ նստած՝ տատը գուրգուրալի աչքերով դիտում էր պարտիզան թոռանը։ Այժմ նա ինչքա՞ն էր հիշեցնում հորը, ճիշտ և ճիշտ նրա խոհուն, սև աչքերը, ճակատի ներքև՝ ծիծեռնակի թևերի նման տարածուն հոնքերով…*

*Իսկ Նիքոն պարթև հասակով մռայլ կանգնել էր, վշտի ու վրեժի արցունքն աչքերին։ Նրա կողքին ընկած էր հովվական տոպրակը՝ մեջը ընդհատակյա «Ռիզոսպաստիս» թերթի վերջին համարները, ավտոմատն ու մի քանի սկավառակ փամփուշտ։*

*Երբ վշտահար պառավը մի քիչ խաղաղվեց, նրա առաջին հարցն եղավ.*

*—Ինչպե՞ս է մեր Զախարիադիսի առողջությունը. զավա՛կս…*

*Նիքոն պատմեց պարտիզանների մեծ հրամանատարի մասին, հատկապես նշեց, որ նա լավ էր ճանաչում իր հորը, խոսեց իր նկատմամբ նրա հայրական հոգատարության մասին։ Ապա պատմեց իր պարտիզան ուսուցչի ճամբարում, բացի ռազմական գործից՝ ընդհանուր գիտելիքներ սովորելու և վերջապես Ստալինգրադի ռազմաճակատում Սովետական Բանակի մեծ հաղթանակների մասին, որ անձամբ լսում էր Մոսկվայից՝ ռադիո-ընդունիչով։*

*Տատը մեծ զարմանքով էր լսում, թե ինչպիսի՞ հրաշք է այդ ռադիո-ընդունիչ կոչվածը, որ հեռավոր, այնքան ցանկալի Մոսկվայի ձայնը հասցնում է մինչև իրենց լեռները։*

*Հետո, ձայնը ցածրացնելով, որպես նվիրական գաղտնիք, Նիքոն տատին պատմեց այն մեծ, ամենակարող մարդու մասին, որ պիտի ոչնչացնի ֆաշիստներին ու փրկի իրենց գյուղը և իր տատիկին…*

*Դա սրբազան ճշմարտություն է։ Այդ մասին Նիքոյին ասել է հենց Զախարիադիսը։*

*Եվ տատը, որ հուսալի, պայծառացած դեմքով լսում էր թոռանը, օրհնեց այն ուժեղ և իմաստուն մարդուն, որ պիտի գա և ֆաշիստներից փրկի իրենց լեռնային գյուղը, ու երկար-երկար կյանք ցանկացավ նրան…*

*Ե՛վ բերկրանքի, և՛ ահի զգացումը համակել էր տատին։ Բերկրանք՝ Նիքոյին կենդանի տեսնելու համար, և ահ, որ նա, ինչպես Թասոն գյուղում, նորից կարող է ընկնել ֆաշիստների ձեռքը…*

Անհանգիստ, նա մեկ գնում էր դեպի լուսամուտը, մեկ՝ դեպի դուռը և լսում դրսի ձայները։

— Տատի՛, մի՛ մտածիր, ես հիմա կմեկնեմ,— պառավին հանգստացրեց Նիքոն։

Հետո նա հետաքրքրվեց, թե կապիտան Մյուլմանն առաջվա պես կալվածատեր Մետաքսասի տա՞նն է ապրում և արդյոք ֆաշիստական զորք չկա՞ գյուղում։

Իմանալով իրեն հետաքրքրող բոլոր հարցերի պատասխանները, Նիքոն հրաժեշտ տվեց տատին և տանից դուրս եկավ։ Նա իր հետ տարավ նաև Տիգրիսի ժառանգ փոքրիկ գամփռին, որ հարևանի խրճիթումն էր մնում։

*
* *

Մարդկային մի կերպարանք գիշերային խավարի մեջ աննկատ մոտեցավ կալվածատեր Մետաքսասի բնակարանին և աստիճաններով անշշուկ բարձրացավ պատշգամբը։ Այնտեղից պարզ երևում էր սենյակի ներսը։ Բաց լուսամուտից լսվում էին գերմաներեն բացագանչություններ, երգի պատառիկներ, հարբած մարդկանց գոռումգոչումներ։ Կլոր սեղանի շուրջը նստել էին մի քանի ֆաշիստ սպա և կանայք, որոնք բաժակները չխկացնելով խմում էին։ Մի երիտասարդ սպա, պենսնեն աչքերին, ոտքի կանգնած օրորվում էր։ Ասես ոչ թե սենյակում էր, այլ ալեկոծ ծովում՝ նավի տախտակամածի վրա։ Նրա աջ կողմը, բաժակը դողդողացող ձեռքին պահած, նստել էր ավելի հասակավոր ճաղատ գլխով մի սպա, որ երևի ուզում էր բաժակաճառ արտասանել, բայց հարբած էր և լեզուն կապ էր ընկնում։ Պատշգամբի մթության մեջ թաքնված մարդը լարված դիտում էր սպաներին և անհանգիստ փնտրում էր մեկին։ Լուսամուտի դիմաց, սեղանի մոտ, թիկնաղարձ նստել էր մի այլ սպա։ Արդյոք նա չէ՞ր, ում փնտրում էր։

Երբ քիչ հետո սպան բաժակը ձեռքին բարձր պահած ոտքի ելավ՝ կիսով չափ շրջվելով դեպի լուսամուտը և առաջարկեց խմել ֆյուրերի կենացը, պատշգամբի մարդը ճանաչեց նրան՝ երկարահասակ, շեկ բեղերով, ձիու դեմքով, դուրս ցցված կզակով հիտլերականին։ Այո նա էր՝ կապիտան Վոլֆ Մյուլմանը, իր հոր դահիճը։ Նիքոյի սիրտը թպրտաց վրեժի սրբազան զգացումից։ Ու նա շտապ հանեց ավտոմատ հրացանը, փողը հենեց սենյակի պատշգամբին և ճիշտ այն վայրկյանին, երբ Վոլֆ Մյուլմանը «հայլ Հիտլեր» էր արտասանում, Նիքոն քաշեց ձգանը և գնդակների տարափ տեղաց հարբած ֆաշիստների վրա։



— Պարտիզաննե՛րը,— լսվեց տագնապալի մի ձայն, որը և լռեց Նիքոյի նոր հերթազարկից հետո։

Կոտրված բաժակների ու ամանների վրա սպաներն ու կանայք արյունլվա գետնին թավալվեցին։

Իր հանդուգն ծրագրի կենսագործումից հուզված՝ Նիքոն լուսամուտից մի պահ դիտում էր սենյակում անշունչ փռված ֆաշիստներին և երջանկությունից սիրտն արագարագ տրոփում էր։ Ապա պատանին իր մոտ կանչեց անհանգիստ դես ու դեն ընկնող փոքրիկ գամփռին և նրա հետ անհայտացավ մոտակա անտառի խորքը, քանի ֆաշիստ սպաներին օգնության չեն հասել։

Նիքոյի դեմքը խոր գոհունակություն և միաժամանակ ինչ-որ մտահոգություն էր

արտահայտում: Նա վրեժ էր լուծել հոր, մոր և վշտահեծ տատիկի համար: Միայն թե այս բոլորը չիմանար պարտիզանների հրամանատարը: Զախարիադիսը չիմանար իր այս ինքնագլուխ քայլը: Ինչքա՜ն խիստ ու անողոք է նա, երբ խախտում են պարտիզանական դիսցիպլինան... Չէ՞ որ իրեն հանձնարարված էր միայն հանդիպել իր ծննդավայրի Հարևան գյուղը և տեղեկություններ բերել ֆաշիստական կայազորի թվի ու ռազմամթերքի պահեստների մասին. իսկ նա այդ հանձնարարությունը կատարելուց հետո՝ դիսցիպլինան խախտելով հանդիպել էր իրենց գյուղը, ոչնչացրել ֆաշիստներին և հորը կախաղան բարձրացնող կապիտան Մյուլմանին: Ի՞նչ աներ. չէր կարողացել դիմանալ մոր և տատիկի կարոտին և հոր վրեժը լուծելու այրող ցանկությանը...

Բայց ոչ. Նիքոն չի կարող սիրելի հրամանատարից թաքցնել իր ինքնագլուխ արարքը... Իրավունք չունի... Չէ՞ որ ինքն արդեն պարտիզանական երդում է ընդունել և պարտիզան է... Ո՛չ, չի կարող թաքցնել... Ինքը պատրաստ է կրել ամենախիստ պատիժն ու այլևս երբեք-երբեք չխախտել դիսցիպլինան...

Նիքոն Զախարիադիսին կպատմի, ամեն-ամեն ինչ կպատմի, ու պարտիզանների հրամանատարը կհասկանա իրեն ու կների...

Եվ Նիքոն ազատ, լիաթոք շնչեց լեռնային օդը և գլուխը բարձր պահած՝ քայլեց առաջ...

Մթնշաղով պատած անտառով ավտոմատն ուսին թեթևաքայլ բարձրանում էր սևահեր պատանին: Մթության մեջ սպիտակին տվող փոքրիկ դամփռն ուրախ մռմռոցով վազում էր նրա առաջից:

Մեղմ աղմկում էր անտառը: Շուրջ բոլորն ազատ քամուց սվսվում էին տերևները:



Լուսնի սկավառակը անտառի ուսին հենված՝ լայն ժպտում էր և ասես հիացած լսում Նիքոյի մարտակոչ երգը.

Էմբրոս, էլաս[1]), յաթին էլադա,
Դո տիքիո քե դի լեֆտերյա...»[2])

---

1) Այդպես էր կոչվում Հունաստանի ազգային-ազատագրական բանակը:

2) Առաջ, էլաս, հանուն Հունաստանի,
Հանուն իրավունքի և ազատության:

## ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԳԱՐՈՒՆ

Քնից արթնացան արմատ ու ցողուն,
Գարուն է պայծառ, արև է ծագել.
Կապույտ երկնքում ամպերն են լողում,
Լեռները կանաչ թավիշ են հագել:
Մանուկներն ուրախ ճիչ ու աղմուկով
Այգի են գալիս գարնան պես զվարթ,
Փռվում է նրանց խնդությունը ծով,
Ամեն մեկն ասես մայիսյան մի վարդ:
Եվ խաղաղության աղավնին այսօր
Մեր մանուկների սրտերն է գերել.
Խաղաղությունն է միշտ ամենազոր,
Նա է աշխարհին խնդություն բերել:
Հաղթանակ է մեր գործերում անվերջ,
Մենք ուսման համար միշտ առաջավոր,
Իսկ մեր հայրերը աշխատանքի մեջ
Խաղաղություն են կոփում ամեն օր:

ԷՄՄԱ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ
(Երևանի 52-րդ դպրոցի 7-րդ «բ» դասարանի աշակերտուհի)

# ՈՂՋՈ՜ՒՅՆ ՔԵԶ, ՃԱՄԲԱՐ

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

Ողջո՜ւյն քեզ ճամբար
Ուրախ, խնդագին
Գալիս ենք թովիչ
Քո գիրկը կրկին:

Մեր նախկին ճամփան
Մեզ նոր է թվում,
Ինչքա՜ն շատ բան է
Փոխվել մի տարում:

Կամուրջ են շինել
Գետակի վրա,
Որ ճամփորդն ազատ՝
Նոր ճամփով գնա:

Ճամփի եզերքին
Ծառեր են տնկել.
Մեր ճամփան նախկին՝
Ասֆալտ է հագել:

Նայում ենք ներքև
Հրազդան գետին.
Այն ի՜նչ նոր շենք են
Շինել գետափին:

Շենքն այդ վարդագույն,
Գեղեցիկ այնքա՜ն,
Մի նոր կայան է,
Մի հիդրոկայան:

Գնում ենք առաջ.
Կանաչ բացատում
Պիոներական
Ճամբարն է ժպտում:

Զեփյուռն է փչում
Մեր սեգ սարերից,
Հավքերն են թռչում
Զով անտառներից...

Ինչքա՜ն ծառեր կան,
Ինչքա՜ն ծաղիկներ...
Ջա՜ն, չքնա՜ղ ճամբար,
Քո գիրկն ենք եկել...



# ԱՆՏԱՌՈՒՄ

Ս. ՕՐԲԵԼՅԱՆ

Նկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ

*«Սուսանա» գեղեցիկ անտառը սկիզբ է առնում Ղափանի մոտերքից և տարածվում դեպի հարավ, դեպի Արաքսի հովիտը: Դա բավական մեծ անտառ է, որը տեղ-տեղ ընդհատվում է փոքր ու մեծ բացատներով: Ունի նաև ստվերոտ խոր ձորեր ու մամռապատ ժայռեր:*

*Անտառում ապրում են քարայծեր, այծյամներ, վայրի խոզեր, արջեր, աղվեսներ, գայլեր, կզաքիսներ և նապաստակներ:*

*Տաք ու արևոտ օր էր: Բացատի տարբեր մասերում արածում էին կոլտնտեսության ոչխարները: Մեղմ քամին խշշացնում էր ծառերի տերևները, ճոճում բարակ ճյուղերը:*

*Հանկարծ թռչունների երգն ընդհատվեց: Անտառում երևաց սավառնող բազեն: Բոլոր փետրավորները երկյուղից կծկվել էին, թաքնվել ծառերի խիտ տերևների մեջ: Բազեն մի քանի պտույտ գործեց, հետո նստեց մի բարձր ծառի:*

*Այդ ժամանակ կոլտնտեսության հովիվ Տիգրանը բացատում նստած հաց էր ուտում*

ու նայում դիմացի անտառին: Անտառը լուռ էր: Մի փոքր հեռու, պատանի գառնարածները հոտի մոտ խաղում ու ծաղիկներ էին փնջում: Մեկ էլ անտառի խորքից մի ինչ-որ ձայն լսվեց: Բոլորն ականջ դրեցին:

— Ի՞նչ ձայն է,— շշուկով հարցրեց Միշան:

— Շան ձագի,— պատասխանեց Գառնիկը:

— Այնտեղ շունը ի՞նչ է անում, ուրիշ բան կլինի,— իր կարծիքը հայտնեց հովիվ Տիգրանը, որ բազմամյա որսորդ էր:

— Գնա՞նք՝ տեսնենք ինչ է,— հարցրեց Միշան:

— Գնանք, գնանք:

— Քեռի Տիգրա՛ն, մենք ուզում ենք գնալ այնտեղ, որտեղից ձայն է լսվում:

— Սպասիր, Միշա՛, դուք մենակ այնտեղ գնալ չեք կարող:

Եվ Տիգրանը տեղից վեր կացավ, ձայն տվեց իր ընկերոջը՝ Սիմոնին, որ նա հոտին նայի, իսկ ինքը վերցրեց ձեռնափայտն ու քայլեց անտառից լսվող ձայների կողմը: Պատանիները հետևեցին նրան:

Երբ հասան անտառի խորքը նրանց դիմաց ցանկապատի նման մի բան երևաց, որի ներսի կողմից ոռնձկորների ճվճվոց էր լսվում: «Ցանկապատի» վերևում մի ցածր ժայռ կար: Բարձրացան այդ ժայռի վրա և նրանց առաջ բացվեց հետևյալ տեսարանը: Տարօրինակ ցանկապատը, որ տեսել էին տղաները, վայրի խոզի բույն էր, որի մեջ խլվլում էին հինգ կամ վեց օրական խոճկորներ: Նրանցից ամեն մեկի մեջքին զուգահեռ շերտեր կային: Խոճկորները մարդկանց ներկայությունից սարսափած՝ իրար հրմշտում էին, տեղ փնտրում, որ դուրս փախչեն, բայց մայրն այնքան ամուր էր կառուցել բույնը, որ նրանից դուրս գալու հնար չկար:

Քեռի Տիգրանը նայում էր խոճկորներին, շարժում գլուխը, ինքն իրեն խոսում.

— Հիսուն տարվա որսորդ եմ, հարյուր խոզ որսած կլինեմ, բայց չգիտեի, որ այս կենդանին բույն է շինում, իր ձագերին թողնում նրա մեջ, իսկ ինքը գնում կեր ճարելու:

Մենք միշտ էլ կարծել ենք, թե ձագերին հետը ման է ածում...

Մայր խոզը իր ձագերի ապահովության համար, ժայռի ստորոտն էր տեղափոխել մեծ քանակությամբ փայտ, թփեր: Բույնը կառուցելիս, նախ դրել էր մեծ փայտեր, հետո ուղղահայաց «պատել» էր թփերով: Որպեսզի թփերը ամուր մնան, նրանց եռևից հորիզոնական երկար փայտեր էին դրված. իսկ բույնը դրսից պատած էր փշոտ ճյուղերով: Բնի ներսում գետինը խոր փորված էր և հողը լցված պատերի տակ: Այդ փոսում մայր խոզը կուտակել էր չոր խոտ ու մամուռ, որոնք խոճկորների համար ծառայում էին որպես փափուկ անկողին:

Այդ բույնը դրսից բերդի նման անմատչելի էր, իսկ ներսից փափուկ էր, տաք ու հարմար:

— Դե՛, բավական է, հիմա սրանց մայրը կգա... Գնանք... երևի գնացել է ուտելիք գտնելու կամ ջուր խմելու,— պատանիներին համոզելու տոնով ասաց հովիվ Տիգրանը:

— Այս խոճկորներին մեզ հետ չտանե՞նք,— հարցրեց Միշան:

— Ամեն մեկս՝ երկուսը,— բերկրանքով ավելացրեց Գառնիկը:

— Շատ փոքր են, առանց մոր չեն ապրի, մեղք են: Սրանք այս անտառի անասուններն են, թողնենք, որ մեծանան ու շատանան...

Ապա զգալով, որ պատանիներին դժվար է համոզել, ծեր որսորդը դիմեց նրանց խղճին:

— Բա որ մայրը գա տեսնի իր բալիկները չկա՞ն...

— Գուցե խոճկորների մայրը կենդանի չէ,— ճանապարհին ասաց Միշան,— լսեցի՞ք ինչպես էին ճվճվում:

— Ես էլ եմ կարծում, որ խոզի գլուխը մի բան եկած կլինի,— մտախոհ ասաց քեռի Տիգրանը:

Նրանք հասան ֆերմա: Ամեն մեկն զբաղվեց իր աշխատանքով. բայց պատանի բնասերների ուշադրությունն անտառի կողմն էր: Նրանք ուշադիր լսում էին ամեն մի շշուկ և իրար ասում.

— Լսեցի՞ր, հո խոճկորների ձայնը չէր:

— Չէ, ծիտ էր…

Երեկոյան նրանք ոչխարի հոտը մոտեցրին վրաններին։ Անտառի կողմից ձայն լսվեց։

— Քեռի Տիգրա՛ն, լսեցի՞ք։

Տղաները նորից ականջ դրին, նորից լսվեց ծանոթ ձայնը։

— Հիմա լսեցի՞ր։

— Լսեցի։

— Գնանք բերենք կամ կաթ տանենք, ուտեցնենք։

— Հիմա ուշ է։ Եթե առավոտը նորից ձայն հանեն, ուրեմն ճիշտ է, որ նրանց մոր գլուխը մի բան է եկել։ Այն ժամանակ կմտածենք կերակրելու մասին։

Հաջորդ օրը պատանիները կաթ վերցրին ու գնացին անտառ։ Խոճկորները քաղցից թուլացել, հազիվ էին կանգնում ոտքի վրա։ Նրանց մայրը դեռ չէր վերադարձել։ Առաջինը Գառնիկը փորձեց նրանց կերակրել։

— Միշա՛, չեն ուտում։



— Այդպես չեն ուտի, կաթով ամանը դիր գետնին,— խորհուրդ տվեց Միշան։ Նա խոճկորներից մեկին բռնեց, մոտեցրեց կաթի ամանին, նրա քիթը թաթախեց կաթի մեջ ու բաց թողեց։ Կենդանին գլուխը թափահարեց, հեռացավ ամանից և սկսեց լիզել քիթը։ Քիչ անց նա ինքը մոտեցավ, սկսեց ամանից կաթ ուտել։ Տղաները կաթ ուտել սովորեցրին և մյուս երեք խոճկորին։

— Իսկ այս երկուսին ինչպե՞ս ուտեցնենք, որ ոտքի վրա կանգնել չեն կարող,— հարցրեց Գառնիկը։

Միշան բռնեց խոճկորներից մեկին, ուժով բաց արավ բերանը, իսկ Գառնիկը կաթը լցրեց նրա բերանը։ Այդպես կերակրեցին և քիչ անց թուլացած խոճկորները ոտքի կանգնեցին։

Մի օր էլ խոճկորների համար կաթ տանելիս պատանիները նկատեցին, որ բացատից մի քիչ հեռու, աղբյուրի մոտ, շատ կաչաղակներ են հավաքվել։ Նրանք իջնում էին ծառի տակ, նորից բարձրանում և անվերջ կչկչում։ Պատանիները կամացուկ մոտեցան աղբյուրին։ Խոտերի մեջ երևաց պառկած մի սև կենդանի։

Նրանք վերադարձան և այդ մասին հայտնեցին հովիվ Տիգրանին։ Քեռի Տիգրանն զգուշությամբ մոտեցավ խոտերի մեջ պառկած կենդանուն, ձայն հանեց, բայց սա չշարժվեց։

Վայրի խոզ էր, որի կոկորդի վրա արյան հետքեր կային։

— Հիմա հասկացա՞ք ում գործն է սա։

— Ո՞ւմ։

— Լուսանի. մայր խոզը եկել է ջուր խմելու, լուսանը թաքնված տեղից ցատկել է, կոկորդը ծակել, արյունը ծծել ու գնացել,— բացատրեց քեռի Տիգրանը։

Պատանի բնասերները մորից զրկված խոճկորներին տարան ֆերմա և շարունակեցին կերակրել կաթով։

Խոճկորները մեծացան, սկսեցին հանգ գնալ գառների հետ, և երբ տղաները ձայն էին տալիս, խմբով վազում էին նրանց մոտ։

# ՄԱՆՈՒԿՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Ս. ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ
(Ստալինյան մրցանակի լաուրեատ)

Նկ. ԱՐ. ՋԱՔԱՐՅԱՆԻ

Սևան լճի խորքում անդորր
Քնել էին ջրերը խոր.
Ջրերն այնտեղ, իսկ ներքևում
Հողերն էին ծարավ այրվում:
Որ չմնան հողերը չոր,
Որ չքնեն ջրերը խոր,
Սոսի հայրը դրա համար
Մի նախագիծ գծեց հարմար:



Հարկավոր էր սարը ճեղքել,
Հարկավոր էր ժայռը ծակել,
Բացել ջրի ճանապարհը,
Դրա համար Սեթի հայրը
Թունել բացեց ժայռի խորքում.
Այդ թունելով ջուրը անքուն
Իջավ, ջրեց հողը ծարավ,
Անապատը այգի դարձավ:
Իսկ Սիրանի հայրն էլ ահա
Կայան շինեց ջրի վրա.
Աշխատում է կայանը այդ,



Լույս է տալիս առատ-առատ.
Ու տե՛ս, նստած իրենց տանը
Սոսը, Սեթը և Սիրանը
Այդ նոր այգու միրգը ուտում,
Այդ լույսի տակ դաս են սերտում...



# ԵՍ ՉԵՄ ԵՂԵԼ ՄԱՐՏՈՒՄ

Ես չեմ եղել մարտում,
Ես չեմ տեսել մարտի
Ծխոտ մթնոլորտում
Թռիչքն ահեղ արկի:

Սակայն պատմել է ինձ
Հայրս՝ մի հին զինվոր,
Ճերմակահեր գլխով,
Թևին սպի մի խոր:

Պատմել է, թե ինչպես
Կռվում էին իրենք,
Ինչպես արևակեզ՝
Անցան տափաստաններ:

Անցան դաշտեր արնոտ,
Լեռներ, ձորեր անցան,
Ու մի լույս առավոտ
Երգով Բեռլին մտան:

Պատմել է նա, ու ես
Լուռ լսել եմ նրան
Ու աճել է իմ մեջ
Հին զինվորի տղան:

... Եվ թե հիմա հանկարծ
Ծագի ահեղ մի մարտ,
Ես դուրս կգամ, որպես
Նախկին զինվոր՝ հպարտ:

Ես դուրս կգամ մարտի,
Ու կհաղթեմ, ինչպես
Հանուն խաղաղ կյանքի
Մարտում հայրս հաղթեց:

ՊՈՂՈՍ ԱԲԱՋՅԱՆ
(47-րդ դպրոցի աշակերտ)

# ՀՆԱԳՈՒՅՆ ՏՈԼՈՐՍՈՒՄ

Հ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ
(Պատմական գիտությունների թեկնածու)

Նկ. Վ. ՍԵՎՈՅԱՆԻ

Պատմական թանգարանի նոր ցուցափեղկում գտնվող բոլոր իրերը բերված են Սիսիանի շրջանի Տոլորս գյուղից։ Դրանք գտնվել են մի մեծ դամբարանի մեջ, որտեղ թաղված է եղել բնիկ ցեղի առաջնորդն իր հինգ ստրուկների հետ։ Բոլոր իրերը պատկանել են ցեղապետին, որը միաժամանակ քրմապետ է եղել։ Նա շատ հարուստ է եղել։ Այդ են ցույց տալիս այստեղ հավաքված թանկագին իրերը։ Քրմապետը ոսկե կոճակներով զարդարել է իր հագուստեղենը, գեղեցիկ ու նուրբ զարդարանքներով զուգել է իր կուրծքը, իսկ խաղողի ողկույզ հիշեցնող ոսկե հատիկներից կազմած փնջով՝ իր պարանոցը։ Շրջապատի վրա ազդելու համար նա իր հագուստը զարդարել է բրոնզե խորհրդավոր առարկաներով ու կրծքին կրել թանկարժեք քարից պատրաստած կիսագնդաձև զարդակոճակ։ Դրա կենտրոնում գույնզգույն քարերից նախշեր են արված, իսկ բրոնզի բարակ թելերից պատրաստված է հնգաթև աստղ։ Նրա հագուստը զարդարել է բրոնզե եզան գեղեցիկ գլուխը, որի ճակատի եռանկյունաձև կտրվածքի մեջ դրված է եղել գունավոր ու փայլուն քար։

Ցեղի առաջնորդն ունեցել է նաև դաշույններ, դանակներ, ածելի և բրոնզե երկար կոթով ու կեռ ծայրով գայիսոն։

Սակայն ցեղի առաջնորդը միայն դրանցով չի բավարարվել։ Ցուցափեղկում դրված է նրա գավազանը։ Գավազանի բազմանկյունի դաստակը կերտված է շագանակագույն մարմարից և ամրացված է բրոնզին մի շաղախով, որն ավելի քան 2700 տարի ամուր կպցրած պահում է բրոնզը և քարը։

Այստեղ գտնվող իրերի մեջ ամենից հետաքրքիրը մեր թվականությունից առաջ 8—7-րդ դարերում ձուլված եղջերուն է։ Սրա եղջյուրները շարժական են, առջևի կճղակներից մինչև եղջյուրների ծայրը 25 սանտիմետր բարձրություն ունի, իսկ եղջյուրների միջև եղած ազատ տարածությունը 16 սանտիմետրի է հասնում, մարմնի երկարությունը՝ 13 սանտիմետր է։ Այս եղջերուն եղել է պաշտամունքի առարկա, կուռք։

Տոլորսում գտնված իրերից երևում է, որ



մեր թվականությունից առաջ 8—7-րդ դարերում Հայաստանում եղել են ստրուկներ, որոնց թաղել են ցեղերի առաջնորդների հետ։

Դամբարանում գտնված իրերը՝ զարդարանքը, պաշտամունքի իրերը, դաշույնները, կազմել են ցեղի առաջնորդի սեփականությունը։



# ԳԱՎԱԹԻ ՀԱՄԱՐ

ՀՐ. ՄԱՐԳԱՐՅԱՆ

Ֆոտո Հ. ՀԵՔԻՄՅԱՆԻ



Ապրիլի սկիզբն է։ Ամենուրեք ֆիզկուլտուրայի կոլեկտիվների ու պիոներական դրուժինաների խորհուրդները պատանի սպորտսմենների մասնակցությամբ քննարկում են «Պիոներ» ամսագրի վոլեյբոլի գավաթի առաջիկա մրցումների կանոնադրությունը։

Սկսվում է սպորտային համառ ու հետաքրքիր պայքարը։

Մեկ անգամ պարտվող թիմը դուրս է գալիս խաղաշրջանից, իսկ հաղթողը իրավունք է ստանում մասնակցելու հետագա հանդիպումներին։ Գավաթը կշահի այն թիմը, որը ամբողջ խաղաշրջանի ընթացքում բոլոր հանդիպումները կավարտի հաղթությամբ։ Մասնակցում են 54 դպրոց...

Խաղաշրջանը մոտենում է իր ավարտին։ Բազմաթիվ հանդիպումներից հետո անպարտ են մնացել չորս թիմ՝ Կրուպսկայայի և Պուշկինի անվան իգական, 32-րդ և 62-րդ արական դպրոցների թիմերը։ Ո՞վ կհաղթի։ Այդ կորոշեն եզրափակիչ խաղերը։

Կրուպսկայայի անվան դպրոցում աղջիկները անհանգստանում են. նրանց «հակառակորդը» Պուշկինի անվան դպրոցի թիմն է, որը մրցումների ընթացքում անպարտելի թիմի համբավ է ձեռք բերել։

Պուշկինի դպրոցում էլ են անհանգստանում։

— Օ՜յ, աղջիկնե՛ր,— հուզմունքով ասում է Զուլեյխան իր ընկերուհիներին,— ինչո՞վ կավարտվի մեր հանդիպումը Կրուպսկայայի դպրոցի աղջիկների հետ...

— Հուզվելու կարիք չկա, աղջիկնե՛ր,— դիմում է ընկերուհիներին ամենալավ խաղացողներից մեկը։— Ճիշտ է, Կրուպսկայայի աղջիկները լավ են խաղում, լուրջ «հակառակորդներ են», բայց չէ՞ որ մենք էլ վատ չենք մարզվել։

— Պետք է վստահ լինել սեփական ուժերի վրա և հաղթանակի մասին մտածել,— ասում է Սվետլանան։



32-րդ և 62-րդ դպրոցների վոլեյբոլիստները ցանցի մոտ.



62-րդ դպրոցի թիմը։

Մայիսի 12-ն է։ Կրուպսկայայի և Թումանյանի անվան դպրոցների սպորտային հրապարակները առանձնահատուկ զարդարված են։ Հավաքվել են շատ դպրոցականներ, ուսուցիչներ, ծնողներ։ Հնչում է սուլիչը։ Հրապարակ են մտնում եզրափակիչ խաղերին մասնակցելու իրավունք ստացած հաղթող թիմերը։

— Պուշկինի անվան դպրոցի պիոներական դրուժինայի վոլեյբոլի թիմի՛ն՝ ֆիզկո՜ւլտ...— հնչում է Կրուպսկայայի անվան դպրոցի վոլեյբոլի թիմի ավագի [illegible] ձայնը։

— Ողջո՜ւյն,— գոչում են բոլորը միասին։

Ողջունում են նաև պուշկինցիները։



Մրցումներն սկսվում են։ Կրուպսկայայի անվան դպրոցի հրապարակում գավաթի համար պայքարում են Պուշկինի և Կրուպսկայայի անվան դպրոցի թիմերը, իսկ Թումանյանի անվան դպրոցում՝ 32-րդ և 62-րդ դպրոցների թիմերը։

Կրուպսկայայի անվան դպրոցի հրապարակում գնդակն առաջինը տալիս են պուշկինցիները։ Երկար ժամանակ գնդակը գետին չի ընկնում։ Թիմերը միմյանց չեն զիջում։ Բայց ահա Զուլեյխայի գեղեցիկ կերպով փոխանցած գնդակը Սվետլանայի ուժգին հարվածով անցավ «հակառակորդի» կողմը և ընկավ գետին։ Հաշիվը բացված է՝ 1:0, հօգուտ Պուշկինի անվան դպրոցի։ Սակայն դաշտի տերերն էլ ետ չեն մնում։ Շուտով հաշիվը հավասարվում է՝ 1:1։ Խաղը առաջ է ընթանում փոփոխակի հաջողությամբ, ապա նորից հավասարվում 5:5։ Պուշկինցիները շուտով մոբիլիզացնում են իրենց ուժերը և անցնում հարձակման։ Երկու դպրոցների թիմերի շահած միավորների տարբերությունը սկսում է արագությամբ մեծանալ։ Երկարատև սուլիչ՝ 15:5։ Առաջին խաղը ավարտված է։ Պուշկինցիները հաղթեցին։

Սկսվում է երկրորդ խաղը։ Նույնպիսի հաջողությամբ այս անգամ էլ խաղը շահում են պուշկինցիները։

Թումանյանի անվան դպրոցի սպորտային հրապարակում տեղի ունեցած մրցումներում հաղթող դուրս եկավ 62-րդ դպրոցը։

Հաղթող դպրոցների պիոներական դրուժինաների վոլեյբոլային թիմերին հանձնվեցին «Պիոներ» ամսագրի կողմից սահմանված փոխանցիկ գավաթները։

— Սա մեր դրուժինայի առաջին սպորտային հաղթանակն է, առաջին գավաթը։ Ամուր կպահենք այն,— իր ուրախությունն է հայտնում ընկերուհիներին Զուլեյխան։

Այսպես ավարտվեցին «Պիոներ» ամսագրի վոլեյբոլի գավաթի մրցումները Երևանի դպրոցների պիոներական դրուժինաների միջև։ Գավաթի մրցումները տեղի կունենան նաև գալիք տարիներում։ Ո՞վ կհաղթի հետագայում։ Այս մասին թող մտածեն պիոներական դրուժինաները։



«Պիոներ» ամսագրի գավաթը շահած Պուշկինի անվան դպրոցի վոլեյբոլի թիմը։

# ԿՈՐԵԱՑԻ ՈՐԴԻՆ

ՅՈՒՐԻ ՅԱԿՈՎԼԵՎ

(Հատված պոեմից)

Նկ. Ռ. ԱՌՈՒՍՏԱՄՅԱՆԻ

1.

Արյան տենչը աչքերում,
Հրացան ձեռքին
Անդրծովյան մի զինվոր
Հայտնվեց շեմքին:
— Ո՞ւմ տունն է:
— Իմն է,— ասաց
Իլը համարձակ:
— Քոնն էր, հիմա էլ իմն է,
Օ քե՜յ, դո՛ւրս, արա՛գ:



Նկատելով Յու Զային,
Նա գոչեց.
— Էյ, դու,
Վազիր խկույն, մի բաժակ
Սառը ջուր ինձ տուր:
Բայց Զան տեղից չշարժվեց.
Օտար զինվորին
Նայում էր նա զունատված,
Զարշանքով խորին:
— Անա թե ինչ. չե՞ս ուզում
Տեղից վեր կենալ:
Որ այդպես է, քեզ հիմա
Կստիպեմ պար գալ:
Պարի՛ր,— զինվորն այն փրփրած
Մոտեցավ Զային,
Բայց Զան թքեց զզվանքով
Նրա աչքերին:
Ննգ զինվորը զարմացավ,
Ետ քաշվեց ապշած,
Եվ ավտոմատն այդ պահին
Հանկարծ որոտաց:

Յու Զան անզոր օրորվեց,
Վայր ընկավ անձայն,
Եվ խաիրը կարմրեց
Շիթերից արյան...
Իլը ծունկի է եկել
Եվ շունչը պահած,
Քրոջ ուսերն է ցնցում,
Արցունքը զսպած:
— Յու Զա՛, Յու Զա՛, վեր
կաց, վե՛ր,
Ճիվաղն էլ չկա...
Բայց էլ երբեք չեն բացվի
Աչքերն աղջկա:
Եվ Իլ էյը ողջ ուժով
Բռունցքը սեղմեց,
Ու արցունքը այտերից
Թևքով լուռ սրբեց:
Ոտքի ելավ և տանից
Դուրս եկավ կամաց,
Զգուշորեն, խնամքով
Յու Զային գրկած:

2.

Կորեացու քայլերը
Հաստատ են դառնում,
Կիմ Իր Սենի զորքերը
Հարավ են շարժվում:
Կորեացու կողքին է
Չին զինվորն արի.
Նա եղբայր է և ընկեր
Բովում պայքարի:
Գոչում է նա.—Դո՛ւրս,
յանկի՛,
Դո՛ւրս, արնածարա՛վ...
Առա՛ջ դեպի հաղթանակ,
Միշտ դեպի հարավ:
Սվիններն են շառաչում
Շարքերում ցասկոտ,
Ու զորքի հետ քայլում է
Մի զինվոր ծանոթ:
Շինելը լայն է, երկար
Պատանու համար,
Բայց ավտոմատն է սեղմել
Վրեժով անմար:
Նայեք նրան ուշադիր.
Իլ էյն է դա հենց,
Մարտերում քեժ ու անեղ
Նա արագ անեց:
Հոնքը կիտած, հայացքը՝
Խիզախ, չեշտակի,
Պայծառ աչքերն են վառվում
Տակից գդակի:
Երբ երկար քող տևի,
Նա ետ չի մնա,
Կորեական շինելով
Առաջ կընթանա:
Թող կրակեն. կանգնած է
Շարքում առաջին,
Շքանշանն հերոսի
Փայլում է կրծքին:
— Առա՛ջ, առա՛ջ, իմ
հերո՛ս,
Իմ փոքրիկ զինվոր,
Բոլոր ազնիվ, քաջ մարդիկ
Քեզ հետ են այսօր:

Թարգմ. Պ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ



# ԴՐՈՒԺԻՆԱՆ ԳՆՈՒՄ Է ԱՌԱՋ

Վ. ՏԱԼՅԱՆ

Ֆոտո Տ. ԽԱԱՅԱՆԻ

### ԱԺԴԱՀԱԿ ԼԵՌԱՆ ԽԱՌՆԱՐԱՆԻ ՄՈՏ

Վաղուց էր, որ Աղմաղանը երեխաների այդպիսի բազմություն չէր տեսել, այդքան զվարթ երգեր, քրքիջ ու աղմուկ չէր լսել: Պիոներներից ոմանք մտել էին Աժդահակ լեռան խառնարանը ու միջատներ էին հավաքում, ոմանք խառնարանի եզրերի կարմրավուն ու ծակոտկեն քարերն էին ձեռքերի մեջ շուռ ու մուռ տալիս և հուշատետրերում ինչ-որ բաներ գրում, իսկ ոմանք էլ լեռան գագաթին կանգնած նայում էին հեռո՜ւ, հեռո՜ւ: Եվ ինչքա՜ն հիասքանչ տեսարաններ էին բացվում երեխաների հետաքրքրությունից վառվող աչքերի առաջ:

Այս գագաթից, որ ծովի մակերեսից 3500 մետր բարձր է, նրանք տեսնում էին Նոր-Բայազետ քաղաքն ու շրջակա գյուղերը, ամբողջ Կոտայքը. իսկ Սևանա լիճը, ինչպես քարտեզի վրա, երևում էր ամբողջովին՝ մի ափից մինչև մյուսը. կապույտ, արևի շողերի տակ պսպղացող:

— Տեսե՛ք, տեսե՛ք,— ասում է Լիպարիտ Կարապետյանը,— Մասիսն էլ է երևում... Ա՜յ, այնտե՜ղ...

Բոլորն իսկույն երեսները դարձնում են Լիպարիտի ցույց տված կողմը, ապա գալիս հավաքվում են նրա շուրջը:

— Ուշադիր եթե նայեք, Արաքսի մյուս ափն էլ կերևա,— նկատում է աշխարհագրության դասատու ընկեր Աֆրիկյանը:

— Այո, այո, երևում է, աղնի՜վ խոսք,— բացագանչում են երեխաները, առանց հայացքները տեսածից կտրելու...

Դրանք Նոր-Բայազետի շրջանի Նորատուս գյուղի պիոներներն էին, միջնակարգ դպրոցի աշակերտները:

Սառը քամին ծածանում էր ալ վզկապները, խառնում էր նրանց մազերն ու սուլելով փախչում. իսկ նրանք, որ դեռ բարձրանալիս դիտել էին Զիարաթի լանջերի քարափները, խմել Կապույտ կոչվող սառնորակ աղբյուրների ջուրը, քարեր նետել ճահկների մեջ, այժմ էլ ծանոթանում էին հրաբխային լեռների կազմությանը, անվերջ հարցեր տալիս.

— Ինչպե՞ս են գոյացել...

— Ինչո՞ւ բույսեր չեն լինում այստեղ...

Քիչ նոր բան չսովորեցին պիոներներն այս բացօթյա դասարանում: Նրանք ավելի լավ յուրացրին լեռների ծագման, նրանց բուսականության և մթնոլորտի շերտերի թեմաները:

Լեռնաշղթան բարձրանալուց առաջ Նորատուսի պիոներական դրուժինան լճափ գնաց և շատ նոր բաներ իմացավ: Դա առաջին էքսկուրսիան էր, որ նախաձեռնեց դրուժինայի նորընտիր խորհուրդը: Ճիշտ է, բնության պատանի հետախույզներն այդտեղ տեսան միայն Գավառ գետի դելտան, բայց դա էլ բավական էր, որ բույսերը, խեցիները և ապառները պիոներներին պատմեին, թե ինչ գաղտնիքներ կան լճում, լճի հատակում:

Ապառների ամենալավ կոլեկցիան կազմեց վեցերորդ «ա» դասարանի երրորդ ջոկատը: Սրանց կազմած հերբարիումներն այնքան լավն էին, որ ժողկրթության բաժինը վերցրեց շրջանային ցուցահանդեսի համար: Ջոկատի խորհրդի նախագահ Ռոզա Գասպարյանի կազմած կոլեկցիաները դարձան օժանդակ նյութեր բիոլոգիայի կաբինետի համար:

Շատ հետաքրքիր է վեցերորդ «բ» դասարանի աշակերտ Լիպարիտ Կարապետյանի «գյուտը»: Ջրից ազատված հողերում նա եղջերուի ոսկորներ գտավ: Աշակերտները համոզվեցին, որ դարեր առաջ այդ վայրերում

Այս տարեվերջին դրուժինան նորից գնաց

անտառներ են եղել:

Սևանի լճափ: Նշաններից, որ թողել էին նրանք, իմացվեց, թե որքան է իջել լիճը և ինչ նոր բույսեր ու կենդանիներ են երևացել ջրից ազատված հատակում:

## ՈՒՍՄԱՆ ՀԱՄԱՐ

Հինգերորդ «գ» դասարանում դասերից բացակայողներ կային. ամենից ավելի բացակայում էր Սպայի Սարգսյանը: Ավագ ջոկատավար Շուշիկը պարզեց, որ նա դպրոց չէր եկել դասերը չիմանալու պատճառով: Նա անփույթ էր և օրվա ռեժիմ էլ չուներ:

— Ես կօգնեմ նրան,—ջոկխորհրդի նիստում հայտարարեց Թամարա Մաղաքյանը:



Դրուժինայի խորհրդի նիստը:

Լավ էր կատարում պիոներական պարտականությունը Թամարան: Նա ընկերուհու հետ կրկնեց անցած նյութը, օգնեց խնդիրները լուծելու մեջ: Նրանք միասին օրվա ռեժիմ կազմեցին: Պարապելու և հանգստանալու գործում կարգ ու կանոն սահմանվեց: Դրանից հետո Սպային ո՛չ բացակայում էր, ո՛չ էլ «2» էր ստանում:

Հինգերորդ «ա» դասարանցի Հրաչիկ Թորոսյանը ռուսերենից ետ էր մնում: Ջոկատավարի տված հարցին նա պատասխանում էր, թե դժվարանում է:

Ռուսաց լեզվին նվիրված պիոներական հավաքույթը նոր ուժ տվեց Հրաչիկին: Երբ Լիդան և մյուսները ռուսերեն ոտանավորներ արտասանեցին, պոեմներ կարդացին, Հրաչիկը հասկացավ, որ ինքն էլ կարող է նույնն անել: Միայն հարկավոր էր կամք, համառություն:

Հավաքույթից հետո Հրաչիկն սկսեց ավելի ջանասիրությամբ պարապել և ռուսաց լեզվից միայն «3» և «4» էր ստանում:

Լավ սովորողներ շատ կան Նորատուսի դպրոցում: Կան լավ սովորող ամբողջ ջոկատներ: Այդպիսին է երրորդ «բ» դասարանի ջոկատը, չորրորդ «ա» դասարանի ջոկատը: Այս ջոկատի բոլոր 40 պիոներներն էլ օրինակելի են թե՛ ուսման մեջ, թե՛ բարձր կարգապահությամբ:

Դաս է: Բոլորն ուշադիր լսում են Թամարա Ենոքյանի պատասխանը: Երբ Թամարան նստում է տեղը և դասատու Աղասի Ավետիսյանը նոր հարց է ուղղում դասարանին, քառասուն ձեռք է բարձրանում նստարանների վրա: Բոլորն ուզում են պատասխանել:

Այդպիսին են չորրորդ դասարանցիները:

Դեռևս տարեսկիզբն էր, որ չորրորդ «ա» դասարանի պիոներական ջոկատը Լենինի կյանքին նվիրված հավաքույթ անցկացրեց: Հայկ Թովմասյանը, Ռազմիկ Առաքելյանը, Մերուժան Աղամյանը հուզիչ պատմություններ պատմեցին Լենինի կյանքի մասին:

## ՀՈԳԱՏԱՐ ՊԱՏԱՆԻՆԵՐԸ

Գեղամ Սմբատյանը երրորդ դասարանի աշակերտ է: Նա ինքը փոքր է, բայց հորթերի խնամքը նրա համար ամենևին էլ փոքր գործ չէ: Գեղամը գիտի, որ մեծ պարտականություն է դրված անասնապահների վրա՝ ավելացնել անասունների քանակը: Ուրեմն ինքն էլ կարող է օգտակար լինել այս գործում:

Եվ ահա Գեղամն ընկերների հետ անասնաբուծական ֆերմայում է՝ հորթանոցում:

— Վա՛յ, ի՜նչ լավն են,— ցնծագին բացագանչում է պիոներներից մեկը:

— Սրան տես, սրան տես, դնչիկը ոնց է տնկել,— գոչում է մյուսը:

— Ճակատի սպիտակ նշանը ոնց որ աստղ լինի,— հիացած կանչում է երրորդը:

Ջոտեխնիկ Հայկազն ավելի շատ պիոներների ուրախ դեմքերին է նայում, քան թե հորթերին, որոնցից մի քանիսը դեռ չեն էլ կարողանում ամուր կանգնել բարակ ու նուրբ ոտքերի վրա։ Գեղամն այն բաց մոխրագույն հորթին է ուզում խնամել։

— Վերցրու, Գեղա՛մ,—հանկարծ ասում է Հայկազը և նրան է պարզում բերանին ռետինե պտուկ հագցրած ալյումինե ամանը՝ ծծիկը.— աչքդ Նալո հորթի վրա է, գիտեմ։ Դե որ ուզում ես, ի՞նչ կարող եմ ասել, ա՛ռ, ծծեցրու և խնամիր։

Այսպես սկսվեց Գեղամ Սմբատյանի «աշխատանքը» ֆերմայում։ Ջոտեխնիկը մի-մի հորթ էլ կցում է մյուսներին ու բացատրում, թե օրվա որ ժամերին ու ինչպես պետք է կերակրել։

«Ջինար» հորթը բաժին է ընկնում Սերոժ Սահրադյանին, իսկ «Կաքավը»՝ Մաքսիմ Կիրակոսյանին։

Այնուհետև ամեն օր, պիոներները նշված ժամերին գալիս էին, հորթերին կերակրում, տակերը մաքրում ու կրեոլինի լուծույթով ախտահանում։

Պիոներների խնամած հորթերի քաշն արագորեն ավելանում էր։

Հիմա էլ Գեղամն ամեն օր գալիս է և Նալո հորթին կերակրում է եփած կարտոֆիլով, թարմ խոտով և հյութալի քուսպով։ Հետևում է, որ նրա աղը մյուսները չլիզեն, որ հորթը կերը չթափի, լավ ուտի։

— Կեր, կեր, սիրո՛ւն ջան, կեր,— շշնջում է նա հորթի ականջին, որը երբեմն դառնում է ու փշոտ լեզվով լիզում նրա ձեռքը։

Սերոժ Սահրադյանը նույնպես շատ հոգատար է իր «Ջինարի» նկատմամբ։ Նա նույնիսկ հատուկ սանր է պահում գրպանում, որ հորթի մաշկը սանրի։ Եվ հորթի



Պատանի բնասերները ծառ են տնկում։

մաշկը միշտ փայլում է մաքրությունից։ Նա միշտ կուշտ է և աշխույժ։ Սերոժը քուսպին էլ ինքն է աղ ցանում։

Պիոներները ջանասիրությամբ են կատարում իրենց պարտականությունները։ Հորթերը մեծանում են, պարարտանում։ Հարստանում են նաև փոքրիկ անասնապահների գիտելիքները։

## ՋՈԿԱՏՆԵՐԸ ԴԱՇՏ ԴՈՒՐՍ ԵԿԱՆ

Ամառ էր։ Մոտենում էր բերքահավաքը։ Դրուժինայի խորհուրդը հատուկ նիստ գումարեց։ Ավագ ջոկատավարը խոսեց բերքն անկորուստ հավաքելու մասին։

— Մենք չպետք է թողնենք, որ դաշտում թեկուզ մի հասկ մնա,—կոչ արեց նա։

Եվ կազմակերպված 10 օղակներն էլ բերքահավաքի հենց առաջին օրը դաշտ դուրս եկան։

Բերքահավաքից հետո կոլխոզի նախագահ Սաշիկ Կարապետյանը հպարտությամբ ասում էր.

— Մեծ գործ կատարեցին մեր պիոներները. շա՜տ մեծ գործ, 20 տոննա հասկ հավաքեցին։ Քիչ չէ։ 16 տոննա մաքուր ցորեն ստացվեց… 600 պիոներ էլ ծխախոտի պլանտացիաներում աշխատեցին…

Հրաչիկ Սարգսյան, Մերուժան Մինասյան, Ռազմիկ Մկրտչյան… Ահա նրանք, որոնք շատ ուրիշների հետ միասին տոննաներով հացահատիկ փրկեցին կորստից։

Բարձր բերք ստանալուն օգնեց նաև պիոներների գարնան աշխատանքը, երբ բո-

լոր տասնինը ջոկատները դաշտ ելան։ Սկսվեց գրոհը քարերի վրա։ Եվ երկու կիրակի բավական էր, որ քարերը չքանային 20 հեկտար հողամասից։ Կարծես Քառ, Դղդղ և այլ դաշտերում երբեք քար չէր եղել։

Գարնանացանը վերջանալուց մի քանի օր հետո պիոներական ջոկատները դուրս եկան պայքարելու կրծողների դեմ։

Այս գարնանը պայքարը շարունակվեց։ Առաջին ջոկատը Դոշ գնաց, երկրորդը՝ Ազատ և այլն։ Քսան հեկտար բերրի հող մաքրվեց քարերից, տասնհինգ հեկտարի վրա բնաջնջվեցին մկները։

## ՆՈՐ ՕՐԵՐ, ՆՈՐ ԳՈՐԾԵՐ

Սևանի վրա բացվել է ջինջ ամառը։ Նորատուսի պիոներական դրուժինան պատվով ավարտեց ուսումնական տարին, բայց չի դադարեցրել պայքարը հազար ու մի նոր գիտելիքներ ձեռք բերելու, գիտությունների նորանոր գաղտնիքներն իմանալու համար։

Շատ գրավիչ են դրուժինայի ամառային ծրագրերը. արշավներ, էքսկուրսիաներ, նոր գրքեր, աշխատանք կոլխոզում...

Դրուժինայի ամառային ծրագրում առաջին տեղը դարձյալ բռնում է հայրենի երկրի ուսումնասիրությունը։

Ջոկատավարներից շատերն այժմ էլ հիշում են, թե ինչքա՜ն աղմկոտ էր դրուժինայի խորհրդի ամառային ծրագրերի քննարկմանը նվիրված նիստը։ Խորհրդի անդամներից ամեն մեկն ուզում էր իր առաջարկն անել։ Ավագ ջոկատավար Շուշիկ Սարգսյանը, հրճվանքի ժպիտը դեմքին, ասում էր.

— Լավ, լավ, հանգստացեք... Այնտեղ էլ կգնանք, այնտեղ էլ... Օլիմպիադային էլ կմասնակցենք...

Երբ ջոկատներն իմացան ամռան ծրագիրը, ծափահարեցին։ Եվ իրոք, դրուժինայի ո՞ր պիոների համար հետաքրքիր չէ գնալ Մեքենատրակտորային կայան, էլեկտրակայան, ո՞ր պիոները չի ուզենա իջնել Գոի ձորը, այնտեղի հանքային ջրերը խմել, բարձրանալ Ղարաուլի սարը, բույսեր ու միջատներ հավաքել...

Գյուղի շրջապատն էլ հետաքրքիր է։ Ինչքա՜ն շատ պատմական հուշարձաններ կան այնտեղ՝ հին բերդեր, վանքեր... Հայտ Մուխան գյուղի մոտերքում լճի ջրերից ազատված հարթավայրը, որտեղ մեր գիտնականները 3000—4000 տարվա դամբարաններ են հայտնաբերել։ Որքա՜ն հետաքրքիր է իմանալ, որ դարեր առաջ այդտեղ ցամաք է եղել և ինչ-որ ցեղեր են ապրել։



Երգի-պարի խմբակի փորձը։

— Բոլոր մոտիկ արշավները ոտքով պետք է կատարենք,— ասում է Ջանիբեկ Հակոբյանը.— Թող երկար քայլելուն վարժվեն, դիմացկուն դառնան։

Կգա սեպտեմբերը և պիոներները նոր միայն կզգան, թե ինչպես աննկատելիորեն անցավ հրաշալի ամառը, հետաքրքիր դեպքերով ու զնգուն երգերով լի ամառը։ Կսկսվի նոր ուսումնական տարին ։ Նորատուս գյուղի պիոներական ջոկատները կշարունակեն պայքարել գիտությունների հիմունքներին տիրապետելու համար։

Այսպես է, ահա, ապրում, սովորում և աշխատում Սևանա կապտաշող լճից ոչ հեռու Գավառ գետի ափերին տարածված Նորատուս գյուղի միջնակարգ դպրոցի պիոներական դրուժինան...

# ԱՄԱՌ...

Վերջին անգամ ղողանջեց դպրոցի զանգը. ավարտվեց ուսումնական տարին, եկավ պիոներական զրնգուն ամառը։ Երեխաներից շատերը մեկնեցին պիոներական ճամբարներ, սանատորիաներ և գյուղ՝ իրենց հարազատների մոտ։ Շատերը դուրս եկան տուրիստական արշավների, հայրենի երկիրն ուսումնասիրելու։

Նրանք ամառվա ընթացքում կհանգստանան, կկազդուրվեն, կլինեն մեր հայրենիքի արժանահիշատակ վայրերում, բնության գրկում և թարմացած ու նոր ուժերով վերադառնալով դպրոց, հարազատ դպրոցին նվեր կբերեն բազմաթիվ հերբարիումներ ու կոլեկցիաներ, ինքնաշեն սարքեր ու գործիքներ։

Հետաքրքիր կանցնի երեխաների կյանքը բնության գրկում, քաղաքից դուրս. բայց պակաս հետաքրքիր չի անցնի ամառը և նրանց համար, ովքեր մնացել են քաղաքում. իսկ քաղաքում մնացած երեխաների թիվը շատ է։

Անցյալ տարիների փորձը ցույց տվեց, որ քաղաքում էլ կարելի է հանգստանալ այնպես, ինչպես քաղաքից դուրս գտնվող պիոներական ճամբարներում։ Երևանում անցյալ ամռան ծածանվում էր մոտ հինգ հարյուր ճամբարային դրոշ։ Այդ դրոշները բարձրացել էին մեծ տների ու դպրոցների բակերում։ Ավելի քան 15 հազար երեխա ամառվա ընթացքում հանգստացավ բակային ճամբարներում։ Ամեն առավոտ, արթնացնող շեփորի ձայնի հետ բակերը լցվում էին երեխաներով. սկսվում էր ճամբարային ուրախ առօրյան։ Բակային ճամբարների հավաքական ջոկատներն ու դրուժինաները էքսկուրսիաներ էին գնում, լինում էին քաղաքամերձ անտառներում, մանկական զբոսայգում, թանգարաններում ու գործարաններում։



Ծաղկառատ դաշտերում...

Մեր այս համարում պատմվում է Մարքսի փողոցի № 20 տան բակային ճամբարի մասին։ Այդ ճամբարը Երևանում գործող հինգ հարյուր ճամբարներից մեկն էր։ Այդպես էր անցնում կյանքը նաև մյուս ճամբարներում՝ հետաքրքիր, բովանդակալից և ուրախ։

Անցյալ տարվա նման այս տարի նույնպես բացվել են բազմաթիվ բակային ճամբարներ։ Իրար ետևից բարձրանում են ճամբարային նորանոր դրոշներ։

Ճամբարային կյանքն ավելի հետաքրքիր ու բովանդակալից դարձնելու նպատակով ՀԼԿԵՄ Կենտկոմը, ՀԼԿԵՄ քաղաքային և ռայոնական կոմիտեները մի շարք միջոցառումներ են մշակել։ Ստեղծվել են բոլոր հնարավորությունները, որպեսզի երեխաները կարողանան զարգացնել իրենց ինքնագործունեությունը, ավելի արդյունավետ հանգստանան ու կազդուրվեն։

# ՄԵԾ ԲԱԿՈՒՄ

Լ. ՆԱԶԱՐՅԱՆ

(ՀԼԿԵՄ Երևանի Մոլոտովյան ռայկոմի քարտուղար)

Ամառային սովորական օր էր։ Մակիչ Գևորգյանը շինարարական տեխնիկումում վերջին քննությունը հանձնելուց հետո տուն էր վերադառնում։ Իրենց տան բակում նա կանգ առավ. մեծ բակը դժժում էր մեղվանոցի նման։ Մի անկյունում տղաները վոլեյբոլ էին խաղում, ավելի փոքրերը վազվզում էին բակով մեկ, իսկ պարսպի մոտ, ծառերի տակ մի քանի աղջիկ գիրք էին կարդում։ Ամեն ինչ կարծես թե լավ էր, բայց Մակիչը տեսավ, որ երեխաներն իրար խանգարում են։ Փոքրիկ չարաճճիները հաճախ էին խառնվում վոլեյբոլ խաղացողներին և նրանց խանգարում։ Ընթերցող աղջիկներն ստեպ-ստեպ կտրվում էին գրքերից. նրանց խանգարում էր տիրող ընդհանուր աղմուկը։

— Իսկ ինչո՞ւ այս բոլորը կազմակերպված չանել,— մտածեց նա,— կամ ուղղակի բակային ճամբար ստեղծել։ Ինչո՞վ է պակաս մեր բակը՝ տեղ ունենք, հնարավորություններ կան։

Այսպես էր մտածում նա, երբ մոտեցան Կամոն, Լենան, Լաուրան ու Լևիկը և հենց նրանք էլ խոսք բացեցին բակային ճամբարի մասին։

— Ինչո՞ւ մեզ մոտ էլ բակային ճամբար չստեղծենք։ Տեսեք թե ինչքան երեխաներ կան,— ասաց Կամոն։

— Վատ չի լինի,— ասաց Լենան,— բայց...

Այդ «բայցը» բոլորին հասկանալի էր։ Ի՞նչ խոսք, որ դժվարություններ կլինեն։ Դե, երեխաներին կազմակերպելը դժվար չէ. բակում շատ կոմերիտականներ կան։ Երեխաների մեծ մասն էլ պիոներներ են։ Բայց ճամբարի համար պետք է հայթայթել անհրաժեշտ սարքավորում ու պիտույքներ։ Ահա թե ինչը կդժվարացնի։ Իսկ մի՞թե դա մեծ դժվարություն է. կօգնի կոմերիտմիության ռայկոմը, կօգնեն ծնողները։

— Պետք է գնալ կոմերիտմիության ռայկոմ,— առաջարկեց Կամոն։ Բոլորը համաձայնեցին նրա հետ և անմիջապես գնացին ռայկոմ։

*
* *

Առաջին բանը, որ շատ զարմացրեց բոլորին, դա ծնողների արտակարգ հետաքրքրությունն էր։ Նույնիսկ նրանք, որոնք հանդիմանում էին երեխաներին գնդակ խաղալու համար, եկել էին իրենց առաջարկություններով։

Երեխաներին շատ օգնեց ճամբարային ծնողական խորհուրդը։ Նրանք հոգացին ճամբարային դրոշի ձողի, շտաբի ու գրադարանի շինությունների մասին, իսկ ծնողներից մի քանիսը չզլացան երեխաներին հատկացնել իրենց բնակարանների թանկարժեք իրերը։ Շատ չանցած շտաբում հայտնըվեցին հեռախոս, ռադիո-ընդունիչ, պատերը զարդարվեցին առաջնորդների պորտրետներով, պլակատներով։ Գրադարանում հավաքվեց 412 կտոր գիրք, իսկ աչքի ընկնող տեղում փակցված էր ճամբարի օրվա ռեժիմը։

Երկու օր հետո Մարքսի փողոցի № 20 տան մուտքի մոտ փակցվեց գեղեցիկ ցուցանակը. «Մոլոտովյան ռայոնի 88-րդ բակային ճամբար»։ Նույն օրը երեկոյան ժամը վեցին բարձրացավ ճամբարային կարմիր դրոշը։ Բոցավառվեց պիոներական խարույկը և նրա պայծառ լույսի տակ պիոներներն սկսեցին ուրախ երգել ու պարել։ Երեխաները ցնծության մեջ էին. ուրեմն կարելի է առանց քաղաքից դուրս գալու հանգստանալ ճամբարում, իսկական ճամբարում։

Այդպես էլ մեծ բակում սկսվեց երեխաների ճամբարային կյանքը։ Ամեն առավոտ ժամը ութին ճամբարի շեփորի ձայնը նրանց լիցքի էր կանչում։ Ավելի քան ութսուն պիոներ դուրս էին գալիս լիցքային վարժության։ Սկսվում էր ճամբարային օրը։

Ուրախ ու հետաքրքիր էր անցնում ճամբարային կյանքը։ Երեխաները կազմակերպ-

ված ձևով էին անցկացնում իրենց ամառային հանգիստը։

Ինչե՜ր ասես չտեսան ու չսովորեցին նրանք ամառվա ընթացքում։ Հետաքրքիր հավաքույթներ ու էքսկուրսիաներ, սպորտային խաղեր ու ինքնագործունեության համերգներ։ Երեխաները եղան ապակու, մարմարի, մուլիտի, կոնսերվի և էլեկտրամեքենաշինական գործարաններում, Առաջնորդի մոնումենտ-քանդակի մոտ, Խ. Աբովյանի տուն-թանգարանում և այլն։ Կազմակերպվեցին հետաքրքիր հավաքույթներ ռեսպուբլիկայի նշանավոր մարդկանց մասնակցությամբ։ Երեխաների հիշողության մեջ միշտ վառ կմնա Հ. Թումանյանին նվիրված երեկոն, որտեղ պիոներները բեմադրեցին «Շունն ու կատուն», «Տերն ու ծառան»։

Օգոստոսի քսանչորսին տեղի ունեցավ ճամբարի հանդիսավոր փակումը։ Երեխաները ամառվա ընթացքում թարմացած վերադարձան հարազատ դպրոցը։



Վոլեյբոլի ցանցի մոտ։

* * *

Այս բոլորը տեղի ունեցավ անցյալ տարի։ Այս տարի Մարքսի փողոցի № 20 բակում բակային ճամբարի համար սկսեցին նախապատրաստվել դեռևս ապրիլին։ Նրանք բակում աճեցրել են բազմատեսակ ծաղիկներ, խնամում են ծառերը, հարթել ու մաքրել են բակը և կարգի են բերել ճամբարային իրերը։

Այժմ նրանք Մոլոտովյան ռայոնի № 1 բակային ճամբարի հանդիսավոր բացումից հետո ուրախ և հետաքրքիր են անցկացնում իրենց ժամանակը։

# ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՄԱՐՏԻԿԸ

Ս. ՕՀԱՆՅԱՆ

*1949 թվականի հուլիսի երկուսին մեռավ բուլղարական ժողովրդի առաջնորդ, միջազգային բանվորական շարժման ականավոր գործիչ, Սովետական Միության մեծ բարեկամ Գեորգի Միխայլովիչ Դիմիտրովը։*

*Դիմիտրովը ծնվել է 1882 թվականի հունիսի 18-ին Բուլղարիայի Ռադոմիր քաղաքում, բանվորի ընտանիքում։ Ընդամենը մի*



*քանի տարի սովորելուց հետո, պատանի Գեորգին, նյութական ծանր կարիքից դրդված, իրենց բազմանդամ ընտանիքին օգնելու նպատակով, թողնում է դպրոցը և մտնում տպարան աշխատանքի, որպես գրաշար։ Իր գիտելիքների պակասը նա լրացնում է համառ ինքնակրթությամբ։ Գիշերները մինչև լույս աշխատանքային խցիկում վառվում էր նավթի ճրագը, որի լույսի տակ պարապում էր Դիմիտրովը։*

*Տասնհինգ տարեկան հասակում, Գ. Դիմիտրովը մտնում է ռևոլյուցիոն շարժման մեջ և ակտիվ աշխատանք տանում տպագրիչների պրոֆմիության շարքերում։ 1902 թվականին նա մտնում է բուլղարական սոցիալ-դեմոկրատական բանվորական պարտիայի մեջ։ Շնորհիվ այն անձնուրաց ռևոլյուցիոն պայքարի, որ մղում է Դիմիտրովը կապիտալիստական շահագործման և բանվոր դասակարգի ամեն գույնի թշնամիների դեմ, նա ձեռք է բերում Բուլղարիայի բանվորների սերն ու համակրանքը։*

*Դիմիտրովի հերոսական կյանքը լի է խիզախության, համարձակության, հաստատակամության բազմաթիվ օրինակներով։*

*1919 թվականին Դիմիտրովը ելույթ է ունենում հյուսիսային Բուլղարիայի քաղաքներից մեկում։ Ճառի ժամանակ լեփ-լեցուն դահլիճն են մտնում զինված ոստիկանները և ատրճանակներն ուղղած Դիմիտրովին, պահանջում են դադարեցնել միտինգը։ Դիմիտրովը շարունակում է կրակոտ ճառը։ Ոստիկանապետը զգուշացնում է նրան, որ չլռելու դեպքում՝ կկրակի։ Դիմիտրովը շարունակում է, առանց նույնիսկ նայելու ոստիկանապետի կողմը։ Ճառն ավարտվելու վրա է։ Երբ Դիմիտրովը վերջին կոչերն է անում, սկսվում են կրակոցները։ Շրջապատված բանվորների խիտ շարքերով նա իջնում է ամբիոնից և անվնաս վերադառնում Սոֆիա։*

*1923 թվականի սեպտեմբերյան զինված ապստամբության ժամանակ Գ. Դիմիտրովը Բուլղարիայում ղեկավարում է Գլխավոր Ռևոլյուցիոն Կոմիտեն, ցույց տալով իր անվեհերությունը, անօրինակ տոկունությունը և անսահման նվիրվածությունը բանվոր դասակարգին։ Զինված ապստամբությունը ղեկավարելու համար, ֆաշիստական դատարանը հեռակա ձևով Դիմիտրովին դատապարտում է մահվան, որի պատճառով նա ստիպված է լինում թողնել Բուլղարիան։ Սկսվում է պրոֆեսիոնալ ռևոլյուցիոների դժվար կյանքը։*

*Դիմիտրովի դեմ տասնյակ անգամ մահափորձ են կատարում Բուլղարիայի բանվորական շարժման թշնամիները. մի քանի անգամ նրան ձերբակալում են և նետում*

բանտերի ամենամռայլ խուցերը, սակայն Դիմիտրովը մնում է աննկուն։ Ռուս բոլշևիկների օրինակով, ազատության մեջ, թե խոր ընդհատակում, նա շարունակում է ռևոլյուցիոն պայքարը, կազմակերպում է գործադուլներ, բանվորներին ոտքի է հանում պատերազմի ու նրա հրձիգների դեմ։

Կապիտալիզմի վարձկան հետախույզներն ու լրտեսները ամեն տեղ հետապնդում ու փնտրում են Դիմիտրովին։ 1933 թվականին Դիմիտրովը բանտարկվում է Գերմանիայում։

Կոմունիստների դեմ հալածանքը ուժեղացնելու պատրվակ փնտրելով, նույն տարվա փետրվարի 27-ին, Հիտլերի հրամանով ֆաշիստները իրենք հրկիզելով Բեռլինի ռայխստագի շենքը, մեղքը փաթաթում են կոմունիստների վզին, գլխավոր մեղսակից համարելով Գ. Դիմիտրովին։ Սկսվում է Լայպցիգի պրովոկացիոն դատավարությունը։

Ամիսներ շարունակ Դիմիտրովին շղթայակապ պահում են ամենադաժան մեկուսացման պայմաններում, ենթարկում են սարսռեցուցիչ ֆիզիկական տանջանքների։ Ֆաշիստները ցանկանում են ընկճել Դիմիտրովի ռևոլյուցիոն ոգին։ Սակայն Դիմիտրովի հերոսական վարքը բանտում և դատարանում, նրա ցասկոտ խոսքերը, որ նետում էր նա ֆաշիստ ճիվաղների երեսին, պոկում են դիմակը ֆաշիստական ավազակների դեմքից և միլիոնավոր աշխատավորներ ոտքի հանում ֆաշիզմի դեմ։

Ֆաշիստական դատարանում Դիմիտրովը հանդես է գալիս ոչ թե մեղադրյալի, այլ մեղադրողի դերում։ Նա ոչ թե պաշտպանվում, այլ հարձակվում է։ Նա մերկացնում է բոլոր կեղծ վկաներին, ֆաշիստական-տրոցկիստական լրտեսներին, տեղնուտեղը բռնում է իր և մյուս կոմունիստների մասին հորինված ստերը։ Քարացած ու ապշած դատավորներին ու նրանց կատաղած տերերին նա գամում է անարգանքի սյունին, աներկյուղ շարադրում է կոմունիստների խնդիրները։

Դիմիտրովի խոսքերը դուրս էին թռչում դատարանի դահլիճից և տարածվում աշխարհի բոլոր կողմերը։ Նա դատարանում աղդարարում է.

«Ես պրոլետարական ռևոլյուցիոներ եմ. ես բուլղարական կոմպարտիայի Կենտկոմի և Կոմինտերնի Գործկոմի անդամ եմ։ Ես պրոլետարական ռևոլյուցիայի և պրոլետարիատի դիկտատուրայի ջերմ կողմնակիցն եմ։ Ես Սովետական Միության ու կոմունիզմի հիացած հետևորդն եմ։ Ես մեծագույն հարգանքով եմ վերաբերվում համաշխարհային պրոլետարիատի առաջնորդ Ստալինին»։

Սովետական Միության և ամբողջ աշխարհի բանվոր դասակարգի բողոքի ձայնը ստիպեց դատարանին ազատ արձակել մեծ ռևոլյուցիոներին։

Երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ Դիմիտրովն անձամբ ղեկավարում է բուլղար հայրենասերների պայքարը, որոնք զենքը ձեռքներին բարձրացել էին գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ։

1944 թվականի սեպտեմբերի 9-ին բուլղարական ժողովուրդը հերոսական Սովետական Բանակի օգնությամբ իր հայրենի հողից ընդմիշտ դուրս վռնդեց ֆաշիստական բռնակալներին։

Ֆաշիզմի դեմ մղված պայքարում ցույց տված աչքի ընկնող ծառայությունների համար Գ. Դիմիտրովը 1945 թվականին ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության կողմից պարգևատրվում է Լենինի շքանշանով։

Ֆաշիստական Գերմանիայի ջախջախումից հետո Դիմիտրովը ղեկավարում է Բուլղարիայի ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկայի մեծ շինարարությունը։ Բուլղարիայի աշխատավորները Գ. Դիմիտրովի ղեկավարությամբ բռնում են սոցիալիզմի կառուցման ճանապարհը։ Տասնյակ հազարավոր երեխաներ, որոնք զուրկ էին սովորելու հնարավորությունից, ընդունվում են երկրի բոլոր անկյուններում բացվող նոր դպրոցները։

Լենինի և Ստալինի հավատարիմ աշակերտ Գ. Դիմիտրովը դնում է հիմքերն այն մեծ բարեկամության, որն այժմ ստեղծվել է Բուլղարիայի և Սովետական Միության ժողովուրդների միջև։

Գ. Դիմիտրովին լավ գիտեն Սովետական Միության աշխատավորները, աշխարհի բոլոր պրոգրեսիվ մարդիկ։ Նրան սիրում էին Ֆրանսիայի մետաղագործները և Անգլիայի

դոկերները, Հնդկաստանի մանածագործները և Եգիպտոսի ֆելլահները: Նա եղել է Սովետական ու բուլղարական պիոներների մեծ բարեկամը: Տասնյակ պիոներական ջոկատներ Սովետական Միության մեջ կոչվում են Դիմիտրովի անունով: Դիմիտրովը Սովետական Միությունում ներկա է եղել պիոներական հավաքույթներին, այցելել է պիոներական ճամբարները, դպրոցները:

1934 թվականին, երբ Գ. Դիմիտրովը գալիս է Մոսկվա, մայրաքաղաքի պիոներները նրան ընդունում են գրկաբաց ու ցնծությամբ: Հանդիսավոր նիստերից մեկում պիոներները նրան ընտրում են պատվավոր պիոներ և նրա վզին կապում պիոներական վզկապը:

Լենինգրադի պիոներները, որոնք այժմ հասունացած մարդիկ են, հիշում են Բորժոմի մոտ եղած լեռնային սանատորիաներից մեկում Գ. Դիմիտրովի հետ իրենց ունեցած անմոռաց հանդիպումը:

«Որտեղ էլ լինեք,— ասել է Դիմիտրովը հանդիպման հավաքույթին,— չմոռանաք ամենագլխավորի՝ սովորելու մասին:

Ես միշտ և ամեն տեղ սովորել եմ: Աշխատել եմ տպարանում՝ սովորել եմ, նստել եմ բանտ՝ սովորել եմ: Լայպցիգի դատավարության ժամանակ դարձյալ սովորել եմ»:

Եվ իրոք, բանտում նա սովորել է գերմանական ժողովրդի պատմությունը, անգլերեն ու ֆրանսերեն:

Դիմիտրովի մահվան լուրը իմանալով, Մոսկվայի պիոներները գրում են Սոֆիայի պիոներներին.

«Մեր թանկագին ընկերնե՛ր. ռադիոյով մենք մի տխուր լուր լսեցինք. մեռավ բուլղարական ժողովրդի սիրելի առաջնորդ, պիոներների մեծ բարեկամ Գեորգի Միխայլովիչ Դիմիտրովը: Ընկեր Դիմիտրովը ջերմորեն սիրում էր ոչ միայն ձեր, այլև մեր՝ սովետական ժողովրդին: Իր ամբողջ փառապանծ կյանքի ընթացքում նա պայքարել է ժողովրդի շահերի համար, նրա համար, որպեսզի երկրի վրա կառուցվի ամենից հրաշալի կյանքը— կոմունիզմը:

Թանկագին ընկերներ. մենք, սովետական երեխաներս, երբեք չենք մոռանա մեր երկրի հավատարիմ բարեկամ՝ Գ. Մ. Դիմիտրովին»:

Գեորգի Դիմիտրովը իր ամբողջ հերոսական ու գեղեցիկ կյանքը նվիրաբերեց բուլղարական ժողովրդի ազատության, Լենինի— Ստալինի մեծ գործին, կոմունիզմի կառուցման գործին:

# ՆՇԱՆԱՎՈՐ ՀԱՅՏՆԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆ

ՀՐ. ԲԱՍԻԿՅԱՆ
*(Բիոլոգիական գիտությունների դոկտոր)*

Բջիջ... Ո՞վ չի լսել այս բառը: Ամեն մի մարդ համոզված է, որ կենդանի օրգանիզմների կառուցվածքի մեջ ամենահիմնականը բջիջներն են: Բջիջներն այն մանր մասնիկներն են, որոնցից կազմված է կենդանական ու բուսական աշխարհը:

Հիշեցեք հասած ձմերուկը: Երբ ձմերուկը կտրում ես, նրա միջուկը փայլփլում է, կարծես ապակե փխրուն գունավոր անթիվ բյուրեղներից է կազմված. իսկ բերանում փշրվում է հյութալի համեղ մանրիկ հատիկներով: Դրանք հենց բջիջներն են՝ միջուկի ամենամանրիկ ու հիմնական մասնիկները, որոնցից կազմված են բոլոր օրգանիզմները:

Ձմերուկի բջիջները սովորական աչքով կարելի է տեսնել: Այդպես չեն մյուս բջիջները: Մարդը, կենդանիները, բույսերը միլիարդավոր բջիջներից են կազմված. բայց տեսեք մարդու օրգանիզմի որևէ բջիջ աշխարհի ամենասուրատես մարդն անգամ սովորական աչքով չի կարող տեսնել: Այն տեսնելու համար հատուկ ուժեղ խոշորացույց է հարկավոր:

Անցյալ՝ XIX դարում շատ խոշոր հայտնագործություններ եղան: Դրանց մեջ կարևորներից մեկը հենց այն էր, որ գիտնականները տեսան բջիջը, ուսումնասիրեցին նրա զարգացումը, նկարագրեցին այն:

Բջիջ... Դա ինքը չափազանց փոքրիկ կիսահեղուկ կենդանի նյութ է, օրգանիզմների մեջ ամենափոքրիկը: Բջիջը շարժվում է, աճում, բազմանում: Բջիջն ապրում է. կատարում է նյութերի փոխանակություն: Նա շրջապատից սնունդ և թթվածին է կլանում և իր օրգանիզմից արտամղում է անպետք նյութերն ու ածխաթթու գազը: Բջջի մեջ հիմնականը պրոտոպլազման է, որը շատ բարդ կառուցվածք ունի: Նրա մեջ կան զանազան աղեր, ածխաջրատներ (շաքար, օսլա), ճարպեր: Բայց պրոտոպլազմայի մեջ ամենա-

կարևոր սպիտակուցներն են: Բջջի կյանքի մեջ առաջնակարգ դերը նրանց է պատկանում:

Ինչպե՞ս են առաջանում բջիջները:

Բազմաբջիջ օրգանիզմների աճն ու զարգացումը բջիջների բազմացմամբ է պայմանավորված. իսկ բջիջները բազմանում են կիսվելով: Բջիջը նախ կիսվում է, ապա յուրաքանչյուր կեսը զարգանում է. աճում, դառնում ինքնուրույն բջիջ: Միկրոսկոպով ամեն մի մարդ կարող է տեսնել, թե ինչպես մի բջիջը երկուս է դառնում, երկուսը՝ չորս... Այսպիսի մի բջջից բազմաթիվ բջիջներ կարող են առաջանալ:

Բայց մի՞թե նոր բջիջ կարող է առաջանալ միայն այդ ճանապարհով: Ապա այդ դեպքում ինչպե՞ս է առաջացել առաջին բջիջը:

Բուրժուական գիտությունը պնդում էր, թե բջիջ կարող է առաջանալ միայն մի այլ բջջից, իսկ առաջին բջիջը ստեղծված է ինչ-որ մի գերբնական ուժի կողմից: Դժվար չէ նկատել, որ այսպիսի բացատրություններից մինչև աստվածապաշտությունը միայն մի փոքրիկ քայլ է: Չէ՞ որ կրոնն էլ հենց նույնն է ասում, թե իբր աշխարհի վրա կյանքը, այսինքն առաջին բջիջները, աստված է ստեղծել: Պարզ է, որ սա գիտություն չէ:

Բուրժուական գիտնականները կարծում էին, թե բջջից դուրս կենդանի ոչինչ չի կարող լինել, թե ամեն մի նոր բջիջ ուրիշ բան չէ, եթե ոչ իրեն ծնող բջջի կեսը, նոր ծնվածը համապատասխան միջավայրում նույնպես պիտի կիսվի և այսպես շարունակ:

Բայց այստեղ առաջանում էր մեկ ուրիշ հարց էլ: Այդ դեպքում ինչպե՞ս է առաջանում նորը, ինչպե՞ս է հասարակ օրգանիզմը դառնում բարդ օրգանիզմ, որը իր հատկություններով հսկայական չափով տարբերվում է մի հատիկ բջջից:

*
* *

Դեռ անցյալ դարում առաջավոր գիտնականներն այն միտքը հայտնեցին, թե բջիջը կարող է առաջանալ ոչ միայն բջջից, այլև ավելի հասարակ նյութից. այնպիսի նյութից, որ բջջային կառուցվածք չունի. բայց այն ժամանակ այդ գիտնականների ասածներին ոչ ոք կարևորություն չտվեց:

Բջջի առաջացման հարցով համառորեն զբաղվեցին սովետական գիտնականները: Միայն «Մարքս-լենինյան աշխարհայացքով զինված սովետական գիտությունը կարողացավ մերկացնել ու ժխտել բջջի առաջացման մասին բուրժուական գիտնականների տարածած հակագիտական» տեսությունը:

Տասնյոթ տարի սրանից առաջ Մոսկվայի Պյատնիցկու անվան փողոցի վրա տեղավորված մի փոքրիկ լաբորատորիայում սկսվեցին առաջին աշխատանքները: Սովետական գիտնականները սկսեցին ուսումնասիրել բջիջների առաջացումը՝ բջջային կառուցվածք չունեցող սպիտակուցային նյութերից: Այդ աշխատանքները ղեկավարում էր սովետական նշանավոր գիտնական-բոլշևիկ, բիոլոգիական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր Օլգա Բորիսովնա Լեպեշինսկայան:

Գիտության մեջ հակագիտական տեսությունների դեմ կռվելու զենքերը փաստերն են, իսկ փաստերն իրենք չեն հայտնվում, նրանք լարված, մանրակրկիտ աշխատանքով են հավաքվում: Հենց այդպիսի աշխատանք էր կատարում հռչակավոր գիտնականը:

Լեպեշինսկայան սկսեց ուսումնասիրել, թե ինչպես է ձվի մեջ կազմավորվում հավի ճուտը: Հավի ճուտը բարդ կենդանի օրգանիզմ է, որ կազմվում է բազմաթիվ բջիջներից: Առաջ կարծում էին, թե այդ բոլոր բջիջներն առաջանում են այսպես կոչված սաղմնային սկավառակից, այն սպիտակավուն բծից, որ տեղավորված է ձվի դեղնուցի մակերեսին: Իսկ դեղնուցի մասին ասում էին, որ դա միայն սնունդ է սաղմի համար: Օլգա Բորիսովնայի ուսումնասիրությունները բոլորովին այլ բան ցույց տվին: Միկրոսկոպով դիտելիս գիտնականը նկատեց, որ ձվի զարգացման ժամանակ դեղնուցից անջատվում են բազմաթիվ մանրիկ փայլփլուն բջիջներ: Այս «դեղնուցային բջիջները» կենդանի նյութի մասնիկներ են, որոնք բջջային կառուցվածք չունեն: Լեպեշինսկայան սկսեց քայլ առ քայլ հետևել, թե ինչ են դառնում այդ փոքրիկ մասնիկները ձվի զարգացման ընթացքում: Եվ ահա նրա աչքի առաջ «դեղնուցային գնդիկը» աստիճանաբար փոխում է կառուցվածքը, սկսում է բջջի հատկություններ ստանալ: Այս նոր բջիջների աստիճանական կազմավորումը կինոժապավենի վրա նկարահանվեց:

Այդպիսով պրոֆեսոր Լեպեշինսկայան փաստերով ժխտեց այն կարծիքը, թե իբր «դեղնուցային գնդիկները» միայն սննդարար նյութի մասնիկներ են: Նա մեծ հայտնագործություն կատարեց. ապացուցեց, որ

հավի ձտի օրգանիզմի բջիջներն առաջանում են ոչ միայն սաղմնային սկավառակից, այլև «դեղնուցային գնդիկների» բջջային կառուցվածք չունեցող մասսայից, չկազմակերպված, չձևավորված կենդանի սպիտակուցային նյութից:

Տարիների ընթացքում նորանոր փաստեր հայտնաբերվեցին: Հավի ձուն ուսումնասիրման բազմաթիվ օբյեկտներից մեկն էր միայն: Լաբորատորիայում ուսումնասիրվեցին բազմաթիվ թռչունների, ձկների, երկկենցաղ կենդանիների ձվեր: Բոլոր դեպքերում էլ անխուսափելի կերպով հայտնված էր Լեպեշինսկայայի գտած զարգացման մինչբջիջային փուլը: Անկասկած էր դառնում, որ կենդանի օրգանիզմը կարող է գոյություն ունենալ ոչ միայն բջջի ձևով, այլև որպես չձևավորված, բջիջային կառուցվածք չունեցող նյութ:

Ուրիշ փորձերով Լեպեշինսկայան ապացուցեց, որ օրգանիզմներից ստացված անձև կենդանի նյութից կարող են բջիջներ առաջանալ: Փորձեր արվեցին քաղցրահամ ջրերում ապրող մի տեսակ փոքրիկ կենդանիների վրա, որոնք մի հետաքրքիր հատկություն ունեն: Նրանք արագորեն վերականգնում են իրենց օրգանիզմը նույնիսկ այն ժամանակ, երբ օրգանիզմից մի փոքրիկ կտոր է մնացել: Այդպիսի կենդանիներ են գետային փոքրիկ հիդրաները: Լեպեշինսկայայի լաբորատորիայում այդպիսի հիդրա վերցրին և լավ տրորեցին հավանգի մեջ: Այնպես տրորեցին, որ հիդրայի օրգանիզմի բոլոր բջիջները քայքայվեցին: Ստացվեց կենդանի սպիտակուցային նյութ, այսինքն, հենց այն «մատերիալը», որից կազմված են բջիջները: Այդ նյութի վրա ջուր լցրին: Որոշ ժամանակ անց միկրոսկոպով հետաքրքիր երևույթ կարելի էր դիտել. տրորված մասնիկները սկսեցին աճել, ապա բջջի ձև ստացան և սկսեցին բազմանալ:

Այսպես ուրեմն, մարմնի ամեն մի մաս, որ բջջի կառուցվածք ու ձև չունի, ունի կյանքի հիմնական նշանը, այն է՝ սնուցող միջավայրում կատարում է նյութափոխանակություն, աճում, զարգանում է, ձևավորվում որպես բջիջ: Իսկ երբ կարելի է տեսնել, թե ինչպես են բջիջային կառուցվածք չունեցող նյութից բջիջներ առաջանում, ապա բոլոր հիմքերն ունենք ենթադրելու, որ միլիարդավոր տարիներ առաջ հենց այդ ճանապարհով է երկրի վրա առաջացել առաջին բջիջը:

Այսպես ահա սովետական գիտնականի խոշոր հայտնագործությունը ժխտեց հակագիտական այն «տեսությունը», թե իբր առաջին բջիջն ստեղծվել է ինչ-որ «գերբնական ճանապարհով» — աստծու ձեռքով:

* * *

Լեպեշինսկայայի հայտնագործությունը բժշկության մեջ էլ կարևոր դեր խաղաց: Դրա միջոցով մեր բժիշկներն սկսեցին նոր ձևով բուժել զանազան վերքեր:

Վերքն իրենից ներկայացնում է կենդանի նյութի մի խոշոր բանակ, որն առաջացել է այն ժամանակ, երբ վիրավորվելու հետևանքով օրգանիզմի բջիջները հավաքվել են: Բուժման ժամանակ վերքը ծածկող նոր բջիջները, ինչպես ցույց տվեց Լեպեշինսկայան, առաջանում են ոչ միայն վերքը շրջապատող բջիջների կիսվելով, բազմանալու միջոցով, այլև բջիջային կառուցվածք չունեցող կենդանի նյութից, հատկապես վերքի մեջ լցված արյունից: Այդ նկատի ունենալով Օլգա Բորիսովնան առաջարկել է հատուկ արյունային վիրակապ, որն արագացնում է վերքերի ապաքինումը: Հայրենական Մեծ պատերազմի ժամանակ Օլգա Բորիսովնայի արյունային վիրակապերը մեծ հաջողությամբ օգտագործվում էին մեր մի շարք կլինիկաներում և հիվանդանոցներում:

Լեպեշինսկայայի հայտնագործության շնորհիվ հնարավոր եղավ պարզել մի շարք ծանր հիվանդությունների առաջացման պատճառները: Բուսական և կենդանական օրգանիզմների նոր տեսակների առաջացումը նույնպես հեշտությամբ բացատրվում է Լեպեշինսկայայի խոշոր հայտնագործության շնորհիվ:

Ահա թե ինչու Սովետական Միության Մինիստրների Սովետը Օլգա Բորիսովնա Լեպեշինսկայային շնորհեց Ստալինյան մրցանակի լաուրեատի պատվավոր կոչումը:

Սովետական բիոլոգիական գիտությունը մեր աչքի առաջ վերափոխում է բնությունը: Անձև կենդանի նյութից բջջի առաջացման գիտական ուսմունքի հաղթանակը միչուրինյան բիոլոգիայի նոր, փայլուն հաղթանակն է: Օլգա Բորիսովնա Լեպեշինսկայայի հայտնագործությունը նոր դարաշրջան է բացում բիոլոգիայի և բժշկության մեջ:



# ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹՅՈՒՆ ԱՊԱԿՈՒ ԱՇԽԱՐՀՈՒՄ

*Նկ. Ան. Զորդաջյանի*

Հայպետհրատի մանկա-պատանեկան գրականության բաժինը հրատարակել է գրող Ալ. Արախմանի «Ճանապարհորդություն ապակու աշխարհում» վիպակը, որտեղ պատմվում է Ա. Ի. Միկոյանի անվան պիոներական ջոկատի հետաքրքիր առօրյայի և էքսկուրսիաների մասին: Այնտեղ կարելի է ծանոթանալ ակտիվ պիոներներ և ուսման գերազանցիկներ՝ Շահենի, Գարիկի, Լիլիկի ու մյուսների հետ:

Մի անգամ, ջոկատի հավաքույթի ժամանակ, Շահենը առաջարկեց կազմակերպել զրույց ապակու մասին: Ջոկատը հարմար գտնելով առաջարկությունը, հրավիրեց Ապակու գործարանի դիրեկտոր, Ստալինյան մրցանակի լաուրեատ Մարիամ Բաքաջանյանին, որը էլեկտրական խարույկի շուրջը հավաքված երեխաներին պատմեց ապակու առաջացման պատմությունը և նրա զարգացումը: Հաջորդ օրը ընկեր Բաքաջանյանը պիոներներին հրավիրեց գործարան և նրանց ցույց տվեց սովետական առաջավոր գիտության կողմից ստեղծված ապակու էլեկտրական վառարանները...

Հաջողությամբ հանձնելով տարեվերջի քննությունները, ջոկատը իրենց շեֆի՝ Ապակու գործարանի և դպրոցի դիրեկցիայի օգնությամբ կազմակերպեցին էքսկուրսիա դեպի Մոսկվա: Էքսկուրսիան ղեկավարում էր Մարիամ Բաքաջանյանը: Մոսկվայում պիոներները եղան սովետական խոշոր գիտնական, պրոֆեսոր Կիտայգորոդսկու մոտ Ապակու ինստիտուտում: Երեխաները իմացան, որ Սովետական Միությունում ապակու այնպիսի տեսակներ կան, որոնցից կարելի է շենքեր, նավեր կառուցել, պատրաստել լայն սպառման առարկաներ: Պրոֆեսորը նշեց ապակու խոշոր նշանակությունը մեր կյանքում:

«Ապակի՛, դու մեզ օգնում ես կոմունիզմ կառուցելու գործում...»

Շահենը ավելի շատ սիրեց ապակին և որոշեց միջնակարգ դպրոցը վերջացնելուց հետո, գնալ Մոսկվա՝ ապակու քաղաք և ստանալ բարձրագույն կրթություն, դառնալ ապակու որակյալ մասնագետ:

Այս վիպակը մեր երեխաներին սովորեցնում է սիրել հայրենի գիտությունը, աճել և դառնալ կոմունիզմի ակտիվ կառուցողներ:

Մ. ՄԵԼՔՈՆՅԱՆ

# ՇԱԽՄԱՏ

Բաժինը վարում է շախմատի միջազգային վարպետ Հ. ԳԱՍՊԱՐՅԱՆԸ

**Խնդիր № 3**



Մատ 2 քայլից

*Այս համարում պատանի շախմատիստներին առաջարկվում է մի խնդիր և մի էտյուդ:*

*№ 3 խնդիրը լուծվում է առաջին գեղեցիկ քայլով, իսկ էտյուդը լուծման երկու վարիանտ ունի: Նրանցից առաջինը վերջանում է մատով, իսկ երկրորդ վարիանտով սևերը ստիպված հանձնում են փիղը և անձնատուր լինում:*

**Էտյուդ 1**



Սպիտակները սկսում են և տանում

## ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ



Կարմիր քակ,
Բերանը՝ փակ,
Կեղևը դեղ,
Միջինն համեղ:



Կա մի հսկա մեքենա,
Գործն արագ է անում նա,
Արտը հնձում ու ծեծում,
Ցորենը պարկն է լցնում:



Պապը ձին թամբեց,
Ջրելու տարավ,
Սանձը ջուր խմեց,
Ձին մնաց ծարավ:



Ո՞ր ծաղիկն է կլորերես,
Օգտակար են սերմերը մեզ,
Շատ է սիրում արեգակին,
Միշտ նայում է նրա դեմքին:



Քաշեմ լարը,
Շարժեմ սարը:

*Մ. ԿՈՐՅՈՒՆ*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջի նկարը՝ Պիոներների պալատի նկարչական խմբակի անդամ ԷՄԻԼ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ (VII դաս.)*



*Խմբագիր՝* ՍԵՎՈՒՆՑ Գ.
*Խմբագրական կոլեգիա՝* ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԲԱՏԻԿՅԱՆ ՀՐ., ԽՍԱԲԵԿՅԱՆ Է., ՀԱԿՈԲՅԱՆ Գ., ՄՈՎՍԻՍՅԱՆ Ա., ՍԻՄԱԿ, ՍԻՄՈՆՅԱՆ Ե., ՏԱԼՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ս.

Журнал „Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06*

*ՎՖ 04997, Պատվեր 350. Տիրաժ 5000. Տպագրական 2 1/4 մամուլ. Ստորագրված է տպագրության 13/VI-52 թ.*

*Հայպոլիգրաֆհրատի № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փող. № 65, 1952 թ.*

# ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ

1952

## ՈՒԺԵՂ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Ամստերդամի նավահանգստում բոլորը զարմանքով էին նայում Ռուսաստանի թագավորին, որ կացինը ձեռքին աշխատում էր հասարակ բանվորի նման:

Ալեքսեյ ցարի որդի Պետրոս Առաջինը տարօրինակ մարդ էր համարվում նաև իր հայրենիքում: Դեռ փոքր հասակից նա չէր ենթարկվում պալատական սովորություններին և ամեն ինչ անում էր իր խելքով: Իսկ բնությունը նրան մեծ խելք էր տվել:

Նա ցանկանում էր այն ժամա-



նակվա հետամնաց Ռուսաստանը դարձնել ուժեղ և կուլտուրական պետություն:

1695 թվականին Թյուրքիայի և Ռուսաստանի միջև ծագած պատերազմն ավարտվեց Ռուսաստանի հաղթանակով: Պատերազմից հետո Պետրոսը եղավ Դանիայում, Հոլլանդիայում, Անգլիայում, Ֆրանսիայում և Գերմանիայում: Հայրենիք վերադառնալով նա սկսեց իր բարենորոգչական աշխատանքը: Նա պարզեցրեց ռուսական այբուբենը և տարբեր մասնագիտությունների դպրոցներ բացեց, լույս ընծայեց առաջին ռուսական թերթը, հիմնադրեց Գիտությունների ակադեմիան, բաց արեց գործարաններ, տպարաններ, նավաշինարաններ, պետական կառավարման ձև ստեղծեց:

Իր կազմակերպած հզոր բանակով Պետրոս Առաջինը մի շարք պատերազմներ մղեց շվեդների, թյուրքերի և պարսիկների դեմ: Շվեդներին հաղթելուց հետո Պետրոսը կայսր հռչակվեց:

Սակայն Պետրոսի ամբողջ բարենորոգչական աշխատանքը կատարվում էր բնակչության չքավոր խավերին ճնշելով, նրանց վրա ծանր հարկեր դնելով: Այս էր պատճառը, որ Պետրոս Առաջինի ժամանակ մի շարք ժողովրդական ապստամբություններ ծագեցին:

## ՎԱՍԻԼԻ ՊԵՐՈՎ

— Ո՞ւմ նկարն է այս,— բարկացած հարցրեց ցարական պաշտոնյան, կանգ առնելով «Խաչի երթը գատկին» մակագրությունը կրող նկարի առաջ:

— Վասիլի Գրիգորևիչ Պերովի,— պատասխանեց պատկերասրահի դիրեկտորը:

— Իսկույն դուրս տանել,— կարգադրեց պաշտոնյան:

Նախասովետական գյուղի այլանդակ բարքերը պատկերող այդ հրաշալի նկարի հեղինակ Վասիլի Գրիգորևիչ Պերովը ծնվել է 1833 թվականին, Տոբոլսկում: Նա մանուկ հասակից նկարչական մեծ ընդունակություն է ցույց տալիս: Ծնողները նրան նախ ուղարկում են Արզամասի նկարչական դպրոցը և ա-



պա Մոսկվայի նկարչական ուսումնարանը: Կարճ ժամանակում Պերովն իր նկարներով գրավում է ուսանողների և դասատուների ուշադրությունը և արժանանում Մոսկվայի Նկարչական Ակադեմիայի՝ արծաթե մեդալին:

Վ. Պերովը մեծ դեր է խաղացել ռուսական նկարչության մեջ: Պերովի նկարները տոգորված են իր ժամանակի առաջավոր գաղափարներով: Նա մեծ վարպետությամբ մերկացրել է հոգևորականությանը, ցարական չինովնիկներին, ժողովրդի հարստահարիչներին:

Պերովը հայտնի է նաև որպես վարպետ դիմանկարիչ: Պերովը մեռավ 1882 թվականի հունիսին:

## ՋՈՒԶԵՊՊԵ ԳԱՐԻԲԱԼԴԻ

Ջուզեպպե Գարիբալդիի ծնողները ուզում էին, որ իրենց որդին հոգևորական, փաստաբան կամ բժիշկ դառնա, բայց Ջուզեպպեն սիրում էր ծովը և նավաստի դարձավ:



Պատանի հասակից ջերմ հայրենասեր Գարիբալդիին հուզում էր իր հայրենիքի միասնության և անկախության գաղափարը: Երբ նա մեծացավ, «Երիտասարդ Իտալիա» գաղտնի կազմակերպության անդամ դարձավ: Սակայն 1834 թվականին մատնության հետևանքով կազմակերպությունը հայտնաբերվեց և կառավարությունը Գարիբալդիին ու իր ընկերներին մահվան դատապարտեց: Գարիբալդին ստիպված թողեց իր հայրենիքն ու գնաց Ամերիկա:

1848 թվականին Իտալիայում ռևոլյուցիա տեղի ունեցավ: Գարիբալդին վերադարձավ հայրենիք և թագավորին խնդրեց ավստրիական բռնակալների դեմ կռվելու համար զորք տալ իրեն, բայց թագավորը վախեցավ Գարիբալդիի ռևոլյուցիոն տրամադրություններից և մերժեց նրա խնդրանքը:

Գարիբալդին ստիպված էր երկրի ներսում գտնվող ամեն տեսակի հետադիմական ուժերի և ավստրիական ու ֆրանսիական կանոնավոր զորքերի դեմ կռվել շատ մեծ դժվարությամբ կազմակերպված սակավաթիվ զորքերով: Սակայն Գարիբալդիի բանակը հաղթահարում էր բոլոր դժվարությունները և գրեթե միշտ պարտության մատնում թշնամուն:

Իտալիայի թագավորն ու նրա կողմնակիցները վախենում էին ռևոլյուցիայից և Գարիբալդիին ուղարկում էին ամենավտանգավոր ռազմաճակատները: Նրանք հույս ունեին, որ նա այնտեղ կսպանվի. բայց ժողովրդի սիրելի հերոսը միշտ վերադառնում էր հաղթանակի փառքով: Գարիբալդին ոչ միայն մեծ հայրենասեր էր, այլև մեծ ինտերնացիոնալիստ: Նա մեռավ 1882 թվականին, 75 տարեկան հասակում:

# ՌՈՒՐԱԽ ԱՄԱՌ



Տալլին. 14-րդ մանկամսուրի երեխաները արևի վաննա են ընդունում:



Բրյանսկի մարզ. Բեժիցա քաղաքի բակային ս ներական ճամբարներից մեկը:



Ուկրաինական ՍՍՌ Նիկոլաևյան մարզի պատանի տեխնիկների կայանի մոդելիստները փորձարկում են իրենց պատրաստած նավի մոդելը:

(Ֆոտոխրոնիկա ՏԱՍՍ)